ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ  Թիւ 5

# ԳՐՈՑ ՈՒ ԲՐՈՑ

ԾՐԱԳՐԵԱՑ

Գ. Վ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
ՓԻՇԹՕՖՃԵԱՆ ԵՂԲԱՐՑ
«ԱՐԱՄԱԶԴ» ԳՐԱՏԱՆ





1910
ՏՊԱԳՐ. ՕՆՆԻԿ ԲԱՐՍԵՂԵԱՆ ԵՒ ՈՐԴԻ
ՂԱԼԱԹԻԱ-Կ. ՊՈԼԻՍ

ՆՈՒԷՐ

ԲԱՐԵԿԱՄԱԿԱՆ

ԱՌ

# ՄԵԾ. ՄԱՐԿՈՍ ԷՖԷՆՏԻ

ԱՂԱԲԷԿԵԱՆ




*Բարեկամ.*

Մարդկային ընկերավարութեանց սովորութիւնն է, երբ հեռաւոր տեղէ մը գան, իրենց գտնուած երկրի բարիքներէն կամ հազուագիւտ իրերէն ընծայ մի կը բերեն բարեկամին: Հետեւելով այսմ, երբ Պոլիս եկայ այս անգամ ուզեցի ընծայ բերել Ձեզ իմ երկրէն: Ի՞նչ:

Ի՞նչ կը գտնուէր հոն, ուր ես էի. հող և ջուր միայն, և հողով ու ջրով և եթ կեանք վարող Հայ ժողովուրդ:

Գրոց և բրոց ծրար մ'ընծայ բերի Ձեզ այն հողէն ու ջրէն, որ Հայաստանի անունը կը կրեն տակաւին, ժողովրդէ մը՝ որ սերունդ և անուն Հայութեան ունին: Այս հողն և ժողովուրդ, կամ այսպէս ըսեմք, Հայաստանն ու Հայ, որ հազար անգամ խորամանկութեան ու բռնաւորութեան փորձեր անցուցեր են, փորձեր՝ խլելու այս ազգի արմատը այդ արտէն, կամ փոխելու այն հողի յատկութիւնը, որ այլ ևս չբուսցընէ զՀայ, և չերեւի Հայութեան նշոյլ մը: Բայց Հայերը մանգաղով հնձուած ժամանակ՝ սերմերը թափեր են փոշիներուն մէջ, արմատէն խլուած ժամանակ՝ չեղ մը թողուցեր են քարի մը տակ, ձորի մը մէջ, և նորէն բուսեր, ծլեր, արմատ ձգեր, ոստ արձակեր, ծաղկեր ու պտղաբերեր են անդրէն: Անկարելի է գտնել աշխարհ մը և ազգ մը, որ համեմատուի Հայուն և իւր երկրին, որ այնքան աւեր, մահ, սուր, ուրացութիւն, արիւն, գերութիւն կրած լինի, ու նորէն ցայսօր ապրի:

Իւր քաղաքականն ու կրօնականը, իւր նիւթականն

ու հովիւնը առհասարակ կորսուած. գանձն ու զէնքը անհկէն զինի, մարդն ու խուր բնակարանը, տաճարներու քարերը, և լեզուն ու մոգադամթներն անգամ գերի գնացած են, ստրկութեան ենթարկուած են։ Բայց մեր երկրի հողն ու ջուրը, օդն ու եթերքը օծուած են հրեղէն լեզուով, հրեղէն հոգւով, որք ո՛չ միայն վերատեսցեր են գէշայի այլ և վերապատմեր են հետագայից՝ Հայաստանի Նահապետաց, դիւցազանց, թագաւորաց և սուրբերուց անուններ ու գործերը։ Այս լեռները, հովիտները, ձորերը, գետերը, չէները, աւերները, հողերը, սարերը, ամէնքն ալ խորհրդաւոր անուն մը ունեցած են. և այդ ամէն մէկ անունը կը պարունակէ իւր մէջ անձի մը կամ անցքի մը պատմութիւն, թէ սատոսկ համարուի այն առ այժմ և թէ իրական, և այսպիսեաց շարունակութիւնը՝ մոգադամթներէն աւելի աւելի և անջինջ մատեան մը շարունակած է, այն է բնակչաց բերանացի աւանդութիւնք, կամ վէպք և զրոյցք։

— Ասոնց մէկ նշմարն է իմ ընծայս։

Միտքս այն չէ որ ընդարձակեմ տեսութիւնս այս ընդարձակ և ցանկալի խնդրոյն վրայ, և ոչ քերթել կ'ուզեմ հնախօսութեանց թերթերն ու միտքերը։ Ոչ Վ. Հ. Գ. Ալիշանեանի Յուշիկն ունիմ, ոչ Տ. Ս. Երեմեան Եպիսկոպոսի Հայրենասիրութիւնը, և ոչ ասոնց նմանները։ Անոնք արդարև ուժ և եռանդ ունեցող անձանց գործքեր են։

Ես իբրև մեղու ապրած ու աշխատած եմ. զիս փեթակի մէջ կը պահէին և դրսէն դուռը կը ծեփէին, իմ օրերու մեծ մասը անդուստաես և փականքի տակ անցուցեր եմ. բայց երբ բաց գտեր եմ դուռը, փութացեր եմ ծաղիկներուն վրայ. մասիկ մասիկ անոնցմէ առնուլ թուփէ թուփ թռչելով, և հաւաքածներէս շատը՝ քամիին և պիծակներուն դէմ պատսպարելով, կորսնցուցեր եմ.

ահա ինչ որ ննջած էր բերանս, կը ձօնեմ՝ ազգիս բանասիրաց, ձեր ձեռքով մատուցանելով զայն, ո՛վ իմ՝ բարեկամ՝:

Ընծայիս վերջին մասը, որ է ԴԱՒԻԹ ՍԱՍՈՒՆՑԻՆ կամ՝ ՄՀԵՐԻ ԴՈՒՌԸ անանձին հրատարակելու մտադիր էի: Երէկ ձեռքս առի անոր խրթին յառաջաբանութիւն մը գրելու. միտքս զանազան կնճռոտութիւններ եկան: Թող տուի գրիչս մտքիս հասանքին առջևը, բայց մինչ ձգելով և կարճել ուզելով, շարունակեցի, թէպէտ ատոնց յօժարութեան կը գրէի: Ընկերս՝ Գ. Ս. Տ. Ս. որ բանաւէր և ուսեալ հայրենակից այնիւ երախտագիտներէն մէկն է, և քաղցր ճաշակ ունի հայրենեաց պատկերներ և հնութիւններ օրինակելու, գեղեցիկ գրելու. և իմ թարգմանելուս հակառակ կորզեց ձեռքէս. ընթերցաւ, և զմայլում մը ցոյց տուաւ, հարկադրելով որ չյապաւեմ այդ գրածներս, այլ ընդ հակառակն աւելի ընդարձակեմ: Ես նորէն թողուցի. ոչ թէ խօսք արժէք մը տալու համար, այլ նոյն ընկերիս պատուոյն համար, միայն հաւանած եմ այդ հրատարակութեան այս գրածներս, որք բոլորովին անպատրաստ, անդասակարգ ըլլալով, մասն մասին չհարմարող նիւթեր են: Թողի այնպէս, ատոնց ի գործ դնելու անոնց մէջ ձեռք և դերձութիւնք բառից և բանից. ատոնց Հոմերական և Վիրգիլեան ճարտար հիւսուածոց և պաճուճանքներու. և ատոնց նոյն իսկ Հայոց պատմութեանց և բանաստեղծութեանց զարդն ու նմանութիւնը անոնց տալու. այլ մերկ, պարզ, և ինչպէս գտած ու բերնած էի, նոյն վիճակով ներկայացուցի: Մտածելով թէ փայտերը, քարերը և ամենայն նիւթք ու այլ նիւթերը նախ քան ճարտարապետի՝ իրենց բնական բոյսին և կազմին մէջ թէպէտ անախորժ և անշնորհք երևոյթ մը ունին, բայց ճարտարապետք զանոնք թանկ կը գնեն. և ինչու՞ ամէն արհեստական

*նիւթը իրեն նախնականը պատրաստողն ու վաճառողն ունի, ինչո՞ւ գրաբարեան ալ չունենայ: Թէպէտ ժամանակէ մը հետէ կը նշմարենք առաւել Ռուսաստանի Հայ բանասիրաց մէջ ծաղկեալ այս ճաշակը, ուր ժողովրդական կեանքէն նկարագիր կ՚ըննեն. Հայաստանի տեղագրութիւնք, ռամկական երգերը և զանազան ծէսերը, վէպերը, առածները, կը տպագրեն: Ահա այս խորհրդով իմ երկրէս իբրև ընծայ այս գրուածքս կը նուիրեմ, զոր ընտրեցի. ոչ որպէս զի այսու ես պատիւ մը կամ անուն մը ձեռք բերեմ, այլ գիտելով թէ դուք ունիք ճաշակ այսպիսի պտուղներու, զորս քաղած եմ հայրենի մըրգաստանէն այն ձեռներով, որոց մատերը ձեզնէ քաջալերուած եղեր են գրիչը շարժելու. և ահա բարի լուսոյ առաւօտ մը կը հանդիպիմ Ձեզ՝ փոխարինել ողջունիւս հանդերձ:*

ԾՐԱԳՐՈՂ

*Սրուանձտեանց Գ. Վ.*

1874 Սեպտեմբեր 3
Կ. Պոլիս



# ԻԲՐԵՒ ՆԱԽԵՐԳԱՆՔ

## ՄԻ ՄԱՍՆ

## Մշեցւոց վրայ ընդհանուր տեսութիւն

## ԳՐԱԾԻՍ

(Մանկուտէն միջոցաւ 1869են հրատարակուած:)

... Մամիկոնեանք դեռ Մշոյ աշխարհին տէր չեղած, այս աշխարհի գաւառը սրտի քաջութեան. եւ ազատասիրութեան մէջ նշանաւոր էր. ես կ'ըսեմ՝ Մամիկոնեանք եկան այս աշխարհին մէջ եւ այս աշխարհի բնակիչներով քաջութեան անունը միշտ ժառանգեցին, քան թէ զայն իրենց հետ բերին ու ասոնց տուին: Կրօնասիրութիւնն ալ սեպհական ձիրք մ'էր այս ազգի Հայոց, թէ կռապաշտութեան մէջ, եւ թէ ճշմարիտ Աստուածպաշտութեան մէջ. եւ զայս կ'ապացուցանէ թէ՛ քուրմերու պատերազմը Տրդատայ եւ Լուսաւորչի դէմ, եւ թէ՛ Վարդանայ, Վահանայ, Մուշեղի, գայլ Վահանին եւ անոր կորեանց հաւատակիցներուն՝ Պարսից մոգակրօնութեան դէմ:

Մշոյ Հայերը պէտք էր քաջ լինէին նայելով իրենց հայրենեաց դիրքին: Այն ամեհի բարձրաբերձ լեռները՝ մեծութիւն մը կ'ազդէին անոնց սրտին. անտառներով մացառներով զարդարուած սարերու դաշտերը եւ ծոցերը, նոյնպէս եւ չամբերը, որոց մէջ լեցուն գազաններ են, զիրենք կ'ստիպէին զէնքի վարժուիլ թէ՛ որսալու համար եւ թէ՛ պաշտպանուելու համար: Այս ընդարձակ դաշտը, եւ այն մեծատարած երկինքը վեհութիւն եւ վսեմութիւն կ'ազդէին անոնց հոգւոյն, եւ այն պատուական կլիմային արդէն զօրաւոր եւ յաղթանդամ կը կազմէր անոնց կրանները:

Ջուրերը բոլորն ալ գետեր են, որ չորս կողմի լեռներէն սար ընթացքով և գոռուն գոչուն ձայնով. կը կը վազեն կը թափին Եփրատին ծոցը, և թէպէտ Մեղրագետն ու Եփրատ անձայն կ'ընթանան, բայց այնպէ՛ս արագ, և այնպէս անհարթ և լայնածաւալ պտոյտներով ու հոսանքներով կ'անցնին, որ կարծես ահեղ թագաւոր մի է Եփրատ և անոր սպարապետն է Մեղրագետը. որք Ջրային զօրաց մեծ բանակ մը առած՝ գաւառները տիրելով կը վարեն կը զինեն ի կռիւ ուրիշ տիրապետաց հետ: Այսպիսի երկիր մը՝ որքան իւր բնակչաց նպաստաւորիչ է, այնքան ալ իւր մերձաւորաց և ծանօթից նախանձը կը գրգռէ, և այս պատճառաւ գրեթէ չարունակ կռուի մէջ ծնած ու մեծցած ըլլալով, մահուանէ չվախցող մարդիկ են Մշեցիք:

Այս կարգի մարդիկ եղած են նաև այն ինքնագլուխ Պէյերը, որ կը տիրէին երբեմն Մշոյ երկրին. և մինչայն վերայ քաջութիւն կը գործեն եղեր թէ՛ իրենք և թէ՛ իրենց ձեռքի տակ եղած Հայերն ու Քիւրդերը:

Մշոյ աշխարհ լի է եղեր բանաստեղծներով, երգասացներով, բազմաթիւ աշուղներու տեղ է եղեր այս երկիրը. և այս բնական հետևութիւն է այն քաջաց և քաջագործութեանց, որոց դիւցազնագործութիւնները կը դիւցաբանէին, և անոնց թանկագին մահը պէս պէս երգերով կ'եղերերգէին:

Մշոյ այն գեղեցիկ հովիտը աչք ձգողին սիրտը ինքնին կը թրթռայ, արիւնը կ'եռայ և հոգին կը բարձրանայ:

Բայց այսօր այս նշանները ազգային չեն. Մշոյ քաջերը Քրդերն են, և բոլոր երգեր ու խաղերն ալ Քրդերէն լեզուաւ են: Մեր ըրած դիտողութիւնն ընդհանրապէս է. ՚ի հարկէ մասնաւորները պակաս չեն, ու կը տեսնուին Մշոյ ազգայնոց մէջ:

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Կարող էին արդի Հայերն ալ ատուքինի և նշանաւոր մարդիկ համեմատել, քանի որ երկիրը նոյն գիրքն ունի և նոյն ազգութիւնը կ՚ազդէ բնակչաց: Հայո՛ց մնաստանաց կ՚ըսեմ, որոց չորս կողմը նախնեաց գերեզմաններ են: Տեսնաս ձորի մը մէջ բոլ մի ծառ և աղբիւր մը. աւերակ մը հոն: Գերեզման մը այս բլուրի վրայ: Խաչքար մը այն ինչ տեղ: Անուն տեղեր ալ ուխտի կ՚երթայ Մշոյ ժողովուրդ, առանց գիտնալու թէ ի՛նչ կայ այն տեղ: Բայց մտածողին խորհիլ կու տան, թէ այն տեղերը՝ կամ մեծ գիւղաքաղաք մ՚է կառուցուած, կամ մեծ նահատակ մ՚է ինկած, կամ հրաշք մ՚է տեսնուած: Գեղեր և վայրերը, որոց կոչումն ու անունը մէկ մէկ պատմութիւն են նախնեաց գործոց: Տաճարներու և բերդերու աւերակները, հին եկեղեցիները, որոց մէջ նախնեաց անուն կամ գիւղաքաղաք կամ նշան մը կը տեսնուի, մանաւանդ այն մեծաշէն և հոյակապ վանորայք, որ նախնի Մշեցի Հայոց Աստուածպաշտութեան վկաներ ու վկայարաններն են: Այս տեղ հայրենեաց պաշտպան մ՚է պատկեր: Հոն՝ Կրօնից մեծ պաշտօնեայ մը և մարտիրոս մը: Թարգմանչաց շիրիմները Առաքելոց վանքն են: Մուշեղին և Վահանեանց գամբարանը Ս. Կարապետի մէջ: Սահակ Պարթև Հայրապետը և Շուշանիկ՝ Աշտիշատու նոյն մատուռին մէջ: Հոս է Ցրօնք, Տարօնք, Օձ քաղաք, Վիշապ քաղաք, Խորօնք, Հացիկ, Մեղտի, Կիսար, Տոմ, Բարեխ որ և Բալլու, Մուշեղշէն ևայլն, որոց մէջէն փրկիչներ և լուսաւորիչներ ելած են ազգիս, Ա՜հ, ո՛ր ազգի հայրենիքը այսչափ անմահ և պանծալի յիշատակներ դեռ կենդանի ունի: Մշոյ դաշտի մէկ կողմը Սասնոյ քաջարեր լեռներն են, Տօրոսի շղթան: Միւս կողմը Բզնունեաց ծովը ծփծփալով կը ծածանի, և Ծովասար ճակատը՝ (1)

(1) Գիտնականն Կարապետ Վարդապետ Շահնազարեանց 'ի շարս Հայ պատմագրաց տպագրած Թովմա Մեծոփեցւոյ պատմու

*Մշոյ վերեն է: Միւս կողմերը՝ Բիւրակնեան լեռնք և անոնց գօտիները, անմահացուցիչ ջրերով և ծաղիկներով զարդարուած: Անոնց բնակիչները ինչպէս կայտառ, ինչպէս զուարթադէմ մարդիկ են:*

*Մէկ կողմը Եփրատէս խշալով խոխոջալով Գրգուռէն վար կը հոսէ. իւր խոր և սառնորակ ծոցին մէջ կը կայտռին անթիւ ձկունք և կը խաղան վտակաց մէջ. բադն ու սագը կը ծփծփան իւր ալեաց վրայ. իւր գետափունքները լի են խոշոր և մանրիկ թռչուններով: Արագիլ ամէն գեղի տուներուն երդիքը, և բարձր շէնքերու պարիսպներուն և ծառերուն գլուխը իւր բոյնը դրած է, և հազարաւոր ճնճղուկները անոնց բոյներուն բոլորը ապաւինած: Դաշտի խոտերուն հետ բուսած և ձորերու մէջ ծաղկած վարդենեաց թուփերուն մէջ սոխակներ կը ճլվլան. գարնան, ամրան և աշնան առաւօտները՝ այնպէս սքանչելի տեսարան և լսարան կը կազմեն այս թռչնոց երամը, որ կ'ըսես բնութեան տաճարին մէջ Արարչին փառաբանիչ կարգուած են ասոնք հրեշտակաց տեղ: Արևելեան կողմէն Գրգուռ լեռը կոթողաձև անկուած կ'երևի, որոյ ստորոտը տարածուած է մէկ կողմը Մշոյ դաշտը, միւս կողմը Վանայ ծովը: Առաւօտեան արեգակը երբ նոր կը ծագի, իւր ճառագայթները զարնելով ծովուն ալեաց և դաշտի դոլորշեաց վրայ. կանանչ կարմիր պսակ մը մանեկաձև կը*

---

թեան վերջ 13 ծանօթութեան մէջ, կ'ըսէ. (Գաղղիոյ) կայսերական գրատան օրինակն Ժողովասար գրած է եղեր: իսկ Ս. Էջմիածնի մատենադարանի օրինակն, որ իրեն տպագրածն է. 23րդ երես 23րդ տողին մէջ գրած է Ժողովարան: Երկուքն ալ սխալ են: Անշուշտ կ'ուզէր գրել. եթէ գիտնար թէ Ծովասար անունով լեռն է այն ինչպէս որ պատմութեան կարգը կը ցուցնէ. և մինչև ցայսօր Մշոյ Հայն, Քիւրտն ու Տաճիկն ալ Ծովասար անունը կուտան այդ լեռին, որ Առաքելոց կամ Ղազարու վանքին վերեն է. և Մարաթու լեռան երկթոյլու ճանապարհն է այն :

ձգէ այս Գրգուռայ գլորակ և լերկ գլխին։ Կը զմայլի՛ անոր նայողը։ Գրգուռայ թիկանց 'ի վեր կը բարձրանայ Նէմրութ կամ Նեփրութ լեռը. որոյ գլուխը նման է բոլորակ սեղանի մը. մէջ տեղը հրաբուղխի մարմրուքը, և անոր շուրջ պսակաձև շարուած աղբիւրներ բարեհամ, և ծաղկունք անուշահոտ։ Կարծես այս աղբիւրներ իբրև զովացուցիչ բաժակ դրուած են այս բնութեան սքան-չելի սեղանին շուրջը, որոց ջրերը ժողվելով մէկտեղ աւազան մը կը կազմեն Նեփրութայ գլխու սրտաւորին մէջ, և անկից իջնալով, ինչպէս կ'աւանդեն տեղացիք, Մեղրագետ կը բղխէ իւր ոսկի ալիքն։ Այս Նեփրութ լեռը իւր ձախոյն կախած ունի Բէլայ գիւղը, «'ի տեսիլ կանանց և որդւոց» և 'ի նշան յաղթանակի մեր Հայկին, առաջին Հայուն, առաջին յաղթողին ազատութեան թշնամւոյն։ Այս տեղն է բուն ամենայն հաւանականու-թեան գերեզման Բէլայ, որոյ վերայ երկար խօսելու ժամանակ չէ այժմ։ Մշոյ դաշտի միւս կողմի լեռներու վրայ բարձրացած են գմբէթայարկ վանքերը, Սուրբ Առաքելոց վանք, Սուրբ Յովհաննու վանք և Սուրբ Կարապետին, որոյ ամպամած և արևով ոսկեզօծուած կաթուղիկէից խաչերը ամէն կողմէն հովանի կը սփռեն դաշտի գիւղերուն վրայ նայելով, և ամենուն սիրտերը իրենց կը քաշեն . . . ։

ԾՐԱԳՐՈՂՆ



# ԳՐՈՑ ՈՒ ԲՐՈՑ



Ա.

Այն օրուընէ, երբ մեր դպրոցներու սենեակներն մտաւ օտար լեզուաց ուսումը, և բաւական ուսանողներ հասան, այդ լեզուաց մէջ իրենց ունեցած յառաջդիմութեան հետ, նոր և կարօտալիր ճաշակ մ'ալ ունեցան այն լեզուներով գրուած մատեաններուն, ծանօթացան և ընտելացան անոնց պարունակած գաղափարին և նկարագրին. սի-րեցին զայն, յարմարեցան անոնց, և յետս թողին իրենց բնիկն, հայրենին, ազգայինն ու ընտանին:

Կը խօսին այդ պարոններն ու օրիորդները քաջ քաջ Եւրոպական լեզու մը. իսկ Հայերէնի խօսելու ժամա-նակը՝ կը հանդարտին ու կը կակազեն, ժամանակ կը խորհ-րեն ու կը կոչեն գաղղիերէն մը, ռուսերէն մը, տաճ-կերէն մը, մի և նոյն բառէն մեկնաբանք մ'ալ ձգելով Հայկականին վրայ, թէ — Ի՞նչ, սա մեր Հայերէն լեզուն որքան պակաս և կրճատ է:

Գիտցուած մը քաջելու չափ ունկնդիր եղած եմ՝ շատ անգամ այնպիսեաց, որոնք երկարօրէն ճաշակած են Եւ-րոպացի լեզուաց բառերուն ստուգաբանութեան, ար-տասանելու փափկութեան, ոճերու քաղցրութեան և բարձրութեան. իսկ նիւթի ընտրութեան ու թանգու-թեան ստիպմամբ բացատրելու՝ բառեր չեն կարող գտնել մեր լեզուով. կը կարկամին: Եւ լռելը կը հաճին:

Չեմ նախապաշարուիր. չեմ կարող բոլորովին երկ-բայ համարել այդոնց գոլածը իմ գոլածին, այսինքն Եւրոպականն Հայկականին. յառաջ գնացած է այն տեղ

արհեստն ու գիտութիւնը, յառաջ վարած է իւր մաքին հետ անշուշտ իւր գիրն ու լեզուն. բայց միթէ անոնց յառաջադիմութեան համար թաղենք պիտի մեր սեփականութիւնը։

Ի՞նչ միջոցներ որ անոնք 'ի գործ դրած են, զայն վեր առնենք և մեք, կը համենք անոնց։ Ո՛վ, և քանի՛ք մեզմէ յանձն առին դրաբառի մշակութիւնը, անոր պատմականին, փիլիսոփայականին, և աստուածաբանականին, երգին ու մեղեդին, ընտանեկան վէպին, գեղջկական, ռամկական առողին — աշուղ —, արանց և կանանց, գրոց և բրոց, ասութեանց և աւանդութեանց, առածներու և առակներու, բանաստեղծի և գուսանաքի եալին, գործածած ոճերը, դարձուածքները, ստոյգ բառերը, և մինչև անգամ արտասանելու եղանակը, որ ուժ կամ լքում, սաստ կամ ողոք, հեզն կամ լուրջ, մաղթողական կամ բերկրական, և այլ տարբեր տարբեր նշանակութիւն տալու համար, զորս 'ի կիր կ'արկանեն։

Բ.

Եղեր են, բայց քիչ մարդիկ, մեր մէջ, մեր լեզուին համար աշխատութիւն յանձն առնող։ Դեռ մեր վարժարաններու մէջ չկրցան տառերու հնչումն անգամ ուղղել, կամ ուղիղ արտասանել գիտնալ ու սովրեցնել նոյն տառերը, և նոյն տառերով կազմուած ամբողջ բառերը. զոր օրինակ, դ տառի ձայնը Պոլսեցին և Պոլսեցւոց վարժութիւն ունեցող անձինք կը հնչեն թ ի ձայնով, Ռուսաստանցիք և Տաճկաստանի գաւառացիք՝ բուն Հայաստանի մէջ ծնած ու բնակածները կը հնչեն զայն թ ի և տ ի ձայնէն տարբեր, ճիշդ դաղղիերէն d, և տաճկերէն د տառերու ձայնով։ ջ տառը չ ի ձայնով կը հնչեն Պոլսեցիք, իսկ միւսները ճիշտ տաճկերէն ج ջիմի ձայնով։ Բ ը կը հնչուի հոս փ ի ձայնով, իսկ նոքա կը

հնչեն գաղղիերէն b, և տաճկերէն ب ի ձայնով։ գ ը ք ի ձայնով կը հնչեն ի Պոլիս, իսկ գաւառները ք և կ ձայներէն տարբեր, տաճկերէն ڭ գեաֆի ձայնով։ ձ տառը ց ի ձայնով հնչելու տեղ՝ Հայաստանցիք և ընդհանրապէս դուրսեցիք, գաղղիերէն բաղադրեալ gz ի ձայնով կ'արտասանեն։

Մենք կը սխալինք, այո, երբ բ, գ, դ, ձ, ջ, տառերը, փ, ք, թ, ց, չ, տառերուն տեղ կը գործածենք. և կրկին կը սխալինք երբ պ, կ, տ, ծ, ճ, տառերն ալ, բ, գ, դ; ձ, ջ, տառերու բուն ձայներով կը հնչենք, որով մէկ կարգն բոլորովին աւելորդ կը մնայ։ Դիտողութիւն կը վերցնեն նաև ղ և խ, հ և յ, ւ և վ տառերու հնչմունքը և այլն։

Դ.

Ասոնք մանկավարժական տարրականներ են։ Օ՛. բուն այդ սրահէն, բուն այբէն սկսելու է արդէն ուղղութիւնը, որուն մեր ազգը կարեւորութիւն չտար. և չտալով ալ կարող չըներ զինքն ուղղել. չուղղելով կարող չըներ յառաջ ընթանալ։ Այո՛, ամէն բանը սկիզբէն, այբէն, մանուկէն, առաջին սրահէն ուղղելու ենք։

Դասագիրքեր պէտք են մանուկներուն պատշաճ, հասկանալի և սիրելի բառերով և տարրականներով. զոր օրինակ. գեղացւոյն համար, կով հորթիկ, այծ ոչխար, ուլն ու գառն, դաշտ և խոտ, լեռ և ձոր, ծառ ու ծաղիկ, արտ և ցորեան, եզն ու լուծ, և այլն։ Քաղաքացւոյն ալ իւր ծանօթ տարրականներով։ Իսկ Աստուած, երկինք, լուսին, աստղ, ցերեկ, գիշեր, ամառ, ձմեռ, հայր, մայր, քոյր. եղբայր, հաց, ջուր և այլն, առհասարակ քաղաքացւոյն ու գեղացւոյն։

Երբ մանուկը իւր ծնած տունը, և տան մէջ եղածները կը ճանչնայ, այնուհետեւ տան դռնէն դուրս կ'ըն-

թանայ ախտաթաթիկ․ արեւու շողին, Ջրի կուժին, կատուին ու շնիկին, ճրագին ու կրակին արդէն ծանօթ է նա՝ դուրսը տեսածներուն ալ հետաքրքիր կը լինի։ Եթէ պարտէզ ունի, հողերը կը փորփրէ, խոտ և ծաղիկ կը տնկէ, ու կը խլէ․ քարի մը կամ ապակիի մը կտոր կը գտնէ՝ ձեռքը կ՚առնէ խորհելու և իմանալու կարող եղողի մը պէս հետաքրքիր կը լինի․ տեսածներու անունը կը հարցնէ․ աքլորն ու հաւերը կը ճանչնայ, ճետերու հետ ընկեր կը դառնայ։ Դուռը, դրկիցը, փողոցը, կը նկատէ և կորոշէ։ Ծնողաց հետ զբօսանքի կ՚երթայ, Եկեղեցի կ՚երթայ․ և ուր որ երթան՝ կ՚երթայ․ ինչ որ տեսնէ ու լսէ՝ կը սովրի․ այս սովորոյթից հետ լեզուն ալ կը բացուի, կ՚ընդարձակի։ (1)

Այս խնդրոյն յատուկ ուշադրութիւն տալ պէտք է․ փափուկ և խորին ուշադրութիւն։

Դ.

Դասագրքեր չլինելու է ընտանեկան կեանքի նկարագրութիւն ընելով, ազգային սեպհական սովորութիւնները գրելով․ եկեղեցական տօները և ծէսերը, իւրաքանչիւր գեղին, քաղաքին, գաւառին տեղագրութիւնները, անոնց մօտ եղած լեռան, բլրին, ձորին, պրակին, վտակին․ արտերուն, մարգերուն, շէնքերուն, բերդերուն և աւերակներուն անունները, տեղերն ու ձեւերը ծանօթացնել մանկան։ Ասոնք ոչ միայն զուարճալի և պիտանի կը լինին ուսանողին, այլ և նոր ու մեծ լոյս կուտան մեր հայկական լեզուին, մեր ազգային հնագիտութեան ու պատմութեան որք լի են թիւր հասկացողութեամբ։ Ձեռքդ ա՛ռ մէկ պատմութիւն մը՝ նկարագրող մէկ տեղի

(1) 1866ին երկու կտոր դասագիրք շինեցի այս նման տպագրեալ, որ շատ տեղերէ լաւ ընդունելութիւն գտաւ, և շնորհակալութեան գրեր ալ ստացայ ուսուցիչներէն։

կամ գաւառի, ձեռքդ ա՛ռ Հայաստանի աշխարհագրութեան տախտակ մը, և գնա չըջէ՝ ասոնց ցոյց տուած տեղը. տե՛ս, ասոնց 'ի հիւսիս ցոյց տուածն ի հարաւ կը գտնես, անոնց ցոյց տուած Հայոց ձորն՝ քու տեսածէդ տարբեր կողմ մը. անոնց Աշտիշատը՝ քու տեսած Աշտիշատէն զատ և տարբեր. ո՞ւր Ոսկան բերդը. ո՞ւր Սասունք. ո՞ւր Հարք և Սոփհանիք. ո՞ւր Հաշտեանք. եայլն, եայլն:

Այնքան տարբերանք կան գրելու, և արտագրելու, այնքան թագուցեալ գանձեր կան հետաքրքրելու և 'ի լոյս հանելու, մեր լեզուին և պատմութեան ճոխութիւն տալու նիւթեր, և ուղղելու շատ մը սխալներ, որոց մասին միայն առաջարկութիւն մը ընելու ծրագիրը՝ առուար հատորներ կը կազմէ: Ցաւալի է որ փոքր 'ի շատէ հասկնալու և գրելու չորհք ունեցող ազգայինները, այսպիսի արդիւնաւոր և պարծանք բերող աշխատութիւնը սիրած ու գործ ըրած չեն երենց: Պոլսոյ մեր լրագիրներն ալ յատուկ նշանակութիւն մը տուած չեն այսպիսի խնդրոյ մը: Պատմութեան աշխարհագրութեան դասագիրք շինողները, հետեւող եղած են առաջուց գրուածներուն միայն. և գոյն շատ տեղ կրճատած, տարակուսելի տեղերու և դէպքերու անուններուն վրայ՝ տարակոյս մ'ալ իրենք թողած են մեզ: Բառարան շինողները շատ մը գրաբառ բառերուն յարմարական նշանակութիւն մը տուած են քմածին, և շատ մը իրաց ալ նոր բառ, նոր անուն յօրինած եւ հետեւելով ուրիշ ազգաց նոյն իրին տուած բառի նշանակութեան կամ ստուգաբանութեան: Հարկ չկայ կարծեմ օրինակներ մէջ բերել:

Ե.

Մենք կը շուարինք տեսնելով նաւի մը կազմածքը այնքան մասնաւորներէ և տեսակներէ, որոց բառարանը՝

*նուագողներն ու նուագածուքն են. բայց Նորահեկայցին ընթեր-ցողաց յայտնի է՝ անոնց յատուկ Հայերէն բառերով անուանները։ Գնա նաև Վանայ Աւանց գիւղը, այն տեղի գեղացի նուագարաններուն մասին այս՝ և տե՛ս ու ուսի՛ր բառեր։*

*Հետաքրքիր երգերն պարունակէ է անոնց հօրայ մը ու մամիկ մը՝ երբ պարունը գետնէն հանելու, անօսր հնձելու, և այլով կրելու, աշունը ցիցելու, կանելու, ամբարելու աշխատութեանց միջոցին քանի մասերէ ու տեսակներէ գործիքներու անուններ կուտան. ամէնն ալ Հայերէն։ Գիւղացին տունն իր մէջի կամ կարասեաց և չենքի ձեւին, ամէն մէկ կտորին ու տեսակին զատ անուն կուտայ, թէպէտ անոնն ալ սորվ հողէ ու փայտէ շինուած են։ Անոր տաքարը՝ որով ջուր ու գինի կը խմէ, հողէ* լուլիկ *է, անոր թոնիրը* ակ *ունի և* ակուկայ, *ուսուի օդը կը մտնէ և կրակը կ'արծարծէ, ու այդ օդը* բուրբոն *կը կոչեն։ Անոր* պուտուկն *ու* նօրն *թոնիրին վրայ դնելու համար* խաչերկաթ *ունի երկաթէ, և փայտէ* անօրոց *կամ պորտկամէ* շէշ, *որով կրակը կը խառնէ, և միանգամայն այս խաչերկաթն ու շէշն պատրաստական զէնք է իրեն համար, երբ մթան թող գող մը բանէ տան մէջ, առնուլով կը զինէ ու կը զարնէ, ինչպէս նաև իրեն հող վարող* խոփն, *խոտ ու հատ քաղող* գերանդին *և* մանգաղն *ալ իրեն իրեն զէնք կը գործածէ, երբ գաւառի մէջ կամ անէն զուրս յարձակմանները հանդիպի։ Մեծ* կարասներ *կամ* ամբոցներ (1) *ունի հողաշէն, որոց մէջ* ալիւր, ձաւար, կորկոտ, ախտեռ, գլուլ, բազլայ, *և այլ ուտելու չոր պտուղներ կը լեցնէ. կարաս և տուձիկ, որոց մէջ գինի կը լեցնէ, և* նոսկանոցն *որ գինւոյ չափաման է.* կարապիճ, սեռիկ, կրոց, բղեղ, տոլուղ, *որոնք գործ կ'ածէ* կաթի, եղի, մածնի, թանի, պանրի,

(1) *Ամբրոց. ամբարանոցն է։ Կայ և մի բառ* Անրոց. *զոր գիւղացիք անտանոց շարցուցած աղբերով կը շինեն բրգաձև. մէջը պարապ. հոն կը լեցնեն փոսերու թէթէրը. քակոսը. պատուքը և տաշտարակ փոսերը չոր կոյերը։ Այս ամբոցները դեկերուն շուրջ տարած չէնք մը կ'երևին հեռուանց։*

ժաժկի, մաստրոնի, պինդ թանի կամ թանճաթի *պահելու համար, և զանազան բանջարեղինաց և պտղոց* թթու *դնելու համար*: Սախ, ֆասայ, մաթրաթ, եղանալ *որք կերակուրի ամաններ են*: Կուժ, փարչ, յամալիֆ, պողիկ, բղբղիկ, *ջուր խմելու համար*: Տաշտ *հողէ կամ փայտէ, հալաւը և անձը լուալու աման*: Կօտ, *որ կլոր փայտէ փորուած կը լինի, մեծ և փոքր, կխապանդի ձևով, զոր ջուր խմելու և այլ զանազան իրաց 'ի պէտս կը գործածեն*: Գրդնակ, *որով խմորի գունտերը* սեղանտախտակի *վրայ կը բանայ, և պատուական բարակ* լօշ *հաց կը շինէ, և* մաղրակայի *վրայ դնելով` թոնիրի կողը կը թխէ կ'եփէ*: Զնջողը *այն լաթն է, որով ամանները կը լուայ կը մաքրէ*: Թեփոց, *որով ճաշ կամ հարիսայ կը խառնէ*: Փարասիկը *այն չորըն է, որով իւր թոնիրը կը փարատէ կը սրբէ*: Դմբիկը *որ իւր թոնիրի շուրթը կը ձգէ մխատարի տեղ և վրան կը նստի*: *Փայտէ* տաշտն *այն է, որոյ մէջ խմոր կը շաղախէ, և եփած հացերը անոր մէջ կը դնէ կը պահէ*: *Եփուած հացին զանազան ձևերուն զանազան անուններ կուտան*. փուռնիկ, կլօճ, բաղբաղայ, տօլիկ, լօլիկ *ևլն*:

Զ.

*Իմ ձեռնհասութենէս առ այժմ վեր է այս կարգով գոհացուցիչ գործ մը պատրաստել, միայն յիշելու համար գրեցի: Յիշելու թէ` հովիւն իրեն ոչխարի գոյնին կազմութեան կերպին և ուղղոյն անուններն ունի. իւր ոչխարներու տեսակին, և անոնց մէջ երևցած ախտերուն անուններ կուտայ. յաւ կայ որ` խոտերու արմատներէն կաթ կը հանէ, անով դեղ կ'ընէ իւր գառնուկի վէրքին կամ ցաւին, զոր օրինակ,* պողի *կաթը քսելով ոչխարի վրայ եղած որդերը կը սպաննէ, և որդերու կերած մասին տեղ նոր միս կը շինէ*:

Այսպէս հարսն իր զարդերուն իւրաքանչիւրին անունը զատ զատ գիտէ. որոնցմով կը զարդարուի ժամը կամ վանքերը ուխտ գնալուն, կամ հարսանիք և պար հրաւիրուելուն. և պառաւն իր թժժանքները մի առ մի կ'անուանէ, զոր մեծ խնամով կը պաշտպանէ (1): Հիւսն և դարբինն՝ իրենց գործիքներու անունները, Ջաղացպանն՝ ջաղացքին, դերձակն՝ իր ձեւածներու կտորներուն և կարած տեսակներուն, ոսկերիչն՝ իր շինած զարդերուն, տուն շինողն՝ տան զանազան մասերուն և ձեւերուն զատ զատ անուններ կուտայ. զորօրինակ, տան մը այն մասին՝ Վանեցիք Երեսբաց կը կոչեն, որ պատշգամբն է: Արապաճ, որ տանիքներուն շրջապատը իբրեւ պարիսպ կը բարձրացնեն, որով աւելի կը բարձրանայ շէնքն, և ոչ միայն կը պատսպարուի զողերէն, այլ և ծակեր ունենալով իբրեւ ամրոց կը ծառայէ. և կամ, որպէս զի փողոցէն չտեսնուին տան ընտանիքը՝ երբ տանիքը կ'ելնեն զարնան, ու հոն տեղ կը նստին իրենց ճախրակը կը մանեն, սանդերքով բուրդ կը զզեն, թաթ, թաթպան կը հիւսեն, միջան կը քրքրեն, ասեղով չապիկ ու գտակ կը նշխեն, խօնջան կը շինեն ուլնիկ կը չարեն, եայլն:

Ջորոքան, տանիքներու վրայ դրուած փայտէ խողովակ է, կէս տաշակած, յորում ժողվելով անձրեւի ջրերը և հալած ձիւները, յորդ և շառաչ ձայնիւ կը թափին փողոցը:

Կան այնպիսի իրեր, որք Վասպուրականի մէջ ուրիշ

---

(1) Տարակոյս չկայ որ արդի մօտաներուն անունները հայկական կեանքի չլինիր, ինչպէս նաեւ արուեստներու շատ մը գործիքներ, և շէնքի ու զգեստուց ձեւեր ու անունները, որոնք նախնական կեանքէն դուրս են. և նոր դարու կամ Եւրոպայէն կը պատկանին

*բառով կը կոչուին, Տարօնոյ մէջ ուրիշ, Կարնոյ մէջ ուրիշ, Թերևս ուրիշ անգեր ալ բոլորովին ուրիշ, զոր օրինակ․ Կարնեցւոց և Բասենցւոց անուանած* գուլպան, *Մշեցին կ'անուանէ* բուջ, *Վանեցին* քար․ *ձեռնոցը Մշեցին կը կոչէ* քարնաց, *Վանեցին* քարպան։ Առջկան, *Վասպուրականցւոց բառով այն գործիքն է, որով բուրդ, բամպակ, ապրշում կը մանեն ոտքի վրայ, բուրդի կամ բամբակի գզակը բազկին վերայ ունենալով, և թել եղած* կամր *առջկանի կոթին վրայ փաթթելով․ և որովհետև այս գործիքին բարակ պոչը առջևէն ծունկին վրայ գլորելով թող կուտայ օդին մէջ, ասով թելը կը մանուի, և* կանել *ու* մանել *մի և նոյն նշանակութեամբ գործ կ'ածեն․ այս կ'ստուգաբանուի* առաջքով կանել․ *այս բառը Մշեցիք կը կոչեն* խարման։ *Կտաւագործի* սանտեռւք, մաս-րան, վիլակն, ռուղ, հինածն, սեծն, *բամպակ գզելու* լարն *ու* աղեղն, *և այլ մանր մունր գործիքներն զանազան պէտքերու և արհեստներու՝ իրենց անունով։*

Ի։

*Այս առարկը տնական և արհեստական իրեղինաց վրայ միայն ձգելով, դուրս կը մնան տակաւին կերակուրներու, մշակած գետնի և ծառի պտուղներու, չորեղէն, մատաղեայ քարեղէն և ազգի ազգի հագուստի ու զարդի նիւթերու, տնտեսական այլ և այլ պէտքերու վրայ խօսիլ, որոնք անհուն ու զբօսալի նիւթ կը մատակարարեն զրագիրի մը։ Իսկ թէ քանի տեսակ կայ թռչնոց, և ինչ անոնց անունները․ անոնցմէ իւրաքանչիւրը որ գաւառին մէջ շատ կայ, ինչ գիտելիք անոնց վրայ․ նոյնպէս և ընտանի կենդանեաց և վայրի գազանաց տեսակները, անոնց անունները։ Քանի տեսակ կայ ծառոց, ինչ անուն անոնց, ինչ յատկութիւն, և ինչ*

պտուղ, քանի՛ տեսակ և անուն կայ խնձորին, տանձին քանի՛ խաղողին: Այսպէս նաև ծաղկանց, բանջարեղէնաց, բուսականին ձեռք բերած են՝ պարգևաց հաւաքում մը:

Պտուղները որ մէկ մէկ Հիւսիսկողմէս են նախնական բժշկականութեամբ, կրակով խարածին, գնդակով զարնուածին, սրով միրաւորածին, քարով ջախջախածին, զանազան խոտեր և արմատներ իւրաքանչիւր ցաւին ու վէրքին զատ զատ ի գործ կ՚ածեն. և զանազան չոր ծաղիկներէ, տերևներէ, և արմատներէ փոշիներ ունին թէ վէրքի և թէ ցաւի. պէս պէս մալհամներ կը շինեն թարախ և արիւն մաքրելու. ցամքեցնելու, խոցերը բուժելու. այդ խոտերուն և արմատներուն ոչ միայն անունները կուտան, այլ և հրաշալիքներ ալ կը վիպասանեն. առողջութեամբ ուսած և կ՚ուսուցանեն. կտրած ոսկորը կը կպցնեն, կը դնեն և կ՚ողջացնեն. այն ինչ մեր Եւրոպական Տօքթօրները ալ հազիւ թէ պիտի կրնային այսչափ դարմանել:

Խօսքի կարգն եկաւ գրելու. տարի մը չկայ որ Պոլիս կը գտնուիմ, և բաւական չատ նոր հարսներ և մատաղաշ տիկիններ լսեցի մեռնիլ ծննդաբերութեամբ, այս տեղ, ուր այսքան վկայականով դայեակ տօքթօրներ կան. բայց մեր աշխարհները պառաւ դայեկներու խնամքով, հազարէն մէկը չպատահիր զոհ լինել այդ առթիւ:

Լօշտակ անունով բոյս մը կայ, որ Մշոյ աշխարհին մէջ յաճախ կը գտնուի, առատելապէս Ս. Կարապետի վանքի բոլորը. մացառներու մէջ կ՚արձակէ իր ոստերը, որոնք կը բարձրանան և կը պատատուին փայտերուն, և անոնց թանձրախիտ տերևներուն կը խառնեն իրենց լայն տերևները. որոնք ձևով նման են խաղողի որթի տերևի, իրենց ցօղունը նման որթի բարունակի, և խա-

ղողոյ ողկոյզի ալ չատ նման ողկոյզներ ճութ ճութ կը կախէ. միայն թէ սոր պտուղները մանրիկ են քան գլխաղողին:

Այս այն բոյսն է, որոյ արմատը մարդանման ըլլալ կը համբաւեն. և թէ մինչև անգամ անոնց մէջ արուն ու էգն ալ յայտնի են: Թէ՝ այս արմատը հանելու համար յատուկ աղօթք մը ունին. և թէ՝ երբ կը կտրեն իւր միւս կտորներէն. անհագին ձայնով կը ճչայ. ուլ մը կամ հաւ մը կը կապեն այդ մարդարմատին, որպէս զի երբ ճչայ՝ այն ուլը կամ հաւը անոր ձայնին զոհ լինի. եթէ այդ հնարը չլինի, արմատ հանող մարդը պիտի մեռնի:— Այս հնարքով ուլ մը կամ հաւ մը կ'ուտեն հանող թշուառականները—: Ամենավերջին տարաձայն դաւանութիւն ունի այդ արմատը. և ԻԴ. կերպ ցաւոց ու ախտից դարման է: Բուսական փափաքանօք և թանգ գնով կը գնեն զայն Նոր Նախիջևանէն, հին Երիմէն, և այն կողմերէն Մշու Ս. Կարապետ եկող ուխտաւորներ. որք կը գնեն նաև Նուբրաք հեյկալի, գազպէն, որ յունիս և յուլիս ամսոց չոր օրերուն պղտորագոյն ու անքամի օդերուն կ'իջնէ մայրաներու տերևներուն, փշոտ գազերուն, և մասնաւոր բուսած խոտերուն վրայ, թանձրացած մեղրի նման, ամենազուտ և քաղցր: Նոյնպէս ամեն ուխտաւորներ կը գնեն սպիտակ ձիւթ, կամ Ս. Կարապետի ծամոն բուսածը, որ կանգառ փուշի ընձիւղները կտրելով մայիս ամսուն անկէց ելած կաթն է, զոր կը ժողվեն կը չորցնեն, և տաս փարանոցի մեծութեամբ՝ բայց անկէց բարակ, կլոր նշխար կը շինեն Մշոյ գաւառի աղջիկներ ու հարսները:

Կայ և մի տեսակ խոտ, ձարձառուկի նման, որ աւելի Վանայ գեղացիներուն ծանօթ է, Կերդ կ'ըսեն. անկէց կաթ կը հանեն թանձրացնեն, Եախսու կը շի-

նեն, մարմնոյ ո՛ր տեղ որ քամին բռնած լինի, կը փակցընեն վրան. այնքան կը պրկի մսայ, մինչեւ քամին ծծէ հանէ, ապա կը փրթի։

## Ը.

Աղջիկներ եւ նոր հարսները, որ գարնան կ'ելլեն դաշտերն ու հովիտը, ձոր եւ լեռը բանջար ժողվելու, եւ նստած զըգլըզուն այրերակոյ եզերքը, այդ ծաղիկներու փունջ, խուրձ եւ հիւսկէնը կը պատրաստեն. իրենց գոգնոցը լցած, մանեակը չինած եւ պարանոցն ու բազուկը անցուցած, գլուխը կը զառնան. մրմնջելով այդ զանազան ծաղկանց անուանց, գոյնին, հոտին եւ տեսքին վրայ յօրինուած հովուերգական խաղերը։ Ամէն մէկ ծաղկին զատ զատ վէպեր ունին։ Անոնցմէ մէկը քոյր է, միւսը եղբայր. կամ երկու քոյր՝ մէկ մայր. մէկը քուոր միւսը սանամայր. մէկը տէրտէր՝ միւսը տիրուհի. մէկը սիրող՝ միւսը սիրուած. Աղբրանց արիւն. երկու որբ եղբայր. մէկը արմատ սիրտ՝ միւսը օձու թուր կամ միսած խանճալ. մէկը կթոց լի կաթ է սպիտակ ու անարատ, միւսը թոյն թափող հրեղէն վիշապ. եւայլն, եւայլն։ Իմ միտքս է համեցնել թէ այդ բազմատեսակ ծաղիկները, որ կը գտնուին Հայոց լեռները, անոնց անունները մի առ մի գիտեն թուել ռամիկները հայերէն, ինչպէս նաեւ բանջարեղէնաց, խոտեղէնաց. եւ պրակ պրակ գտնուած մայրաներու անտառաց, մանր ու լոր թփերուն, մորենեաց, ուռենեաց, փուշերուն. որոց ամէնուն անուններն շատ պէտք են գիտնալ. պէտք են տեսնուիլ մեր գրքերու եւ բառարաններու մէջ, անոնք որ դեռ չկան գրուած, համեմատ իրենց նշանակութեան եւ ստուգաբանութեան. որոնք ոչ միայն կ'ընդարձակեն մեր ազգային մատենագրութեան ասպարէզը, այլ եւ նոր գիտու-

*թիւնք և արուեստք ուսանելու փափագ և միջոց կ'ընծայեն անկարողութեան և երկրաբանութեան իրենց ձեղերով : Մանաւանդ գրատպարանները կը փարթամացնեն :*

*Վէպերը, որ յօրինուած են իրրև խաղ, աշուղի ձայնով և եղանակաւ, կամ իբրև* հէքեաթ, *արձակ պատմուածքով, թէպէտ այնքան փոփոխուած աւելցած ու պակասած եղեր են, որ շատերէն մարդ չէ կարող բան մը հասկնալ բայց և շատերն ալ կը պահեն իրենց մէջ ընտիր և բարձր գիւտ ու նիւթ, բանաստեղծութիւնը, դիցաբանութիւնը, կրօնական օրէնսդրութիւնը, սիրահարական տարփանաց բոյն և անոր հետեւանքն եղած աղէտն ու կռիւն որոց նմանակայ է մինչև այսօր միենոյն սերունդ մարդկութեան, անմոռանալի և բաւական բացայայտ իմաստներով պահած ու շարունակած են իրենց մէջ :*

**Թ.**

*Հայաստանի լճակներ և գետերը հրեղէն աղջիկները ունին իրենց ալեաց մէջ. Վանայ ծովին այդ հրեղինաց սրսկապանը Արջակու ծովն է թէպէտ, բայց գրեթէ ամեն լճեր ու գետերը մերթ ընդ մերթ կ'երևցընեն խաղով և սիրով յափշտակուածներուն երևակայութեանը իրենց ըղձացած էակը. հրեղէն գամէշ կը տեսնայ այն ջրերուն մէջը՝ գամէշի սիրահար երկրագործը, և հրեղէն ձի՝ ձիաւոր երիտասարդը :* Փէրիները (1) *կը հիւսեն ամեհի և աշխոյժ ձիերու բաշը, և չար ոգիները կը լլկեն հեծեալաց և անզեղջ մեղաւորած թաղեալ մարմինները, մտնելով անոնց մէջը, հանելով զանոնք գերեզմանէն՝ չղջեցնելով գիշերները չարագործ մարդու մը, կամ շան կամ գայլի*

(1) Փէրի՝ *գուցէ լինի բարի. Ինչպէս ռամկաց մէջ այդպիսի աներևոյթ ոգիները կը կոչուին* ճանլի զնեց աղէկներ·

կամ արջու կերպարանքով․ զոր **գոռճապար** կ՚անուանեն Վանեցիք, և **գոռճափօշի**՝ Մշեցիք։

Յատուկ աղբիւրներ կան անդ անդ․ որոց ակուն չուրջը բազմաթիւ ծաղկունք, զանազան խոտ ու բանջար կան․ ծերացած օձերը կուգան հոն, իրենց շապիկը կը փոխեն․ և ծաղիկներէն մէկը, զոր միայն օձեր կը ճանչնան, կը փրցնեն կ՚ուտեն․ և անմիջապէս աղբիւրի ջուրը մտնելով կը լուացուին, և երեք անգամ կը խմեն, կ՚ելլեն, նորոգուելով իրենց կեանքը. եթէ ուշադիր լինին հովիւները կամ ցանկացողները, ու պատահին օձի այս արարուածին, նկատեն ու ճանաչեն այդ ծաղիկը՝ թէ ո՛րն էր, ու կտրեն ալ ուտեն, և նոյն աղբիւրի ջրէն երեք անգամ խմեն, կ՚անմահանան այդ մարդիկը։

Աչաց լեռան կամ Սեմ սարի ստորոտը կը գտնուի Մառնիկ գեղ․ այս գեղի բնակիչներէն Հայ մը Մարգար անուն, ասկէց հինգ տարի յառաջ մեռաւ։ Աս իւր կենդանութեան կը պատմէր թէ 250 տարեկան էր ինքն․ մենք տեսանք զինքն 1866 ին, իր ջլերը պինդ, երկու անգամ նորոգուած էին ակռաները․ և դեռ այն տարիքին մէջ կը տանէր քաջ, կը լծէր, կը խօսէր․ կ՚ուտէր, կ՚ընթանար երիտասարդի մը պէս, և ամէն առաւօտ լեռան մացառներէն չոր փայտ կը ջարդէր, կը շալկէր բերէր Մուշ կը վաճառէր ձիւն օրերը։ Իւր անդրանիկ որդին 80 տարեկան էր և ալեօք ծաղկեալ․ այն ինչ Մարգարը իւր մօրուքի մէջ շատ քիչ ճերմակ ունէր։

Աս կը պատմէր թէ՝ « 150 տարու եղած ժամանակս աշխարհի մեղաց մէջ ինկայ․ այսինքն կին առի։ Թէ՝ Ծովասարու մէկ աղբիւրի մէջ տեսայ մէկ օր, որ յաղագար ու վիրաւոր օձ մը եկաւ լողալ, և երեք թուփ ունեցող ծաղկէ մը կտրեց կերաւ․ նորոգուեցաւ գնաց․ գնացի ես ալ նոյն ծաղկէն կտրեցի կերայ․ նոյն ջուրը

խմեցի, և լողցայ. աչքերս լուսաւորան. ուրիշ կերպ դարձայ: Հովիւ էի, ու ոչխարներս թողի, կթելու ժամանակն եկեր, ես ոչխարները չեմ տարեր բեր. ոչխարները ցրուեր են. գեղի աղջիկները ելեր են եկեր են լեռը, ոչխարները ժողվեր են, կթեր են, ու գիս չեն գտեր, դարձեր գացեր են, ուրիշ հովիւ մը դրեր են ոչխարի առջեւ, ու քանի մը մարդ առեր են հաց ու զաւ՝ ինկեր սար գիս կը փնտրեն: Ես ո՞ւր եմ: Իմ վրէն անցեր է քանի մը օր, քանի մը գիշեր. ոչ մութ եմ տեսեր, ոչ անօթութիւն եմ իմացեր: Ես, որ էն ջուրը խմեցի ու էն ծաղիկը բերանս դրի՛, տեսայ որ բացուաւ իմ առջեւ մարմար կամարաշէն լուսաւոր պալատ մը, աշխարհից ու մարդոց խելքից դուրս էր անոր շէնքն ու մէջի փառքըն ու բարիքն. անմահութեան տուն ու տեղ էր. բերնով չպատմուիր ինչ որ ես տեսայ: — Անոնք պատմած ժամանակ 'ի խորոց կը հառաչէր: — Մէկ էլ ի՞նչ տեսնեմ իմ գեղի դուր դրկից կը բռան կը կանչեն գիս. ձայն ինկաւ ականջս, դուրս ելայ, բայց շատ զղջացի: Նեղացայ թէ ինչո՞ւ կանչեցին գիս: Հարցուցին, պատմեցի իրենց՝ արածներս ու տեսածներս: Շատ աղաչեցին որ էդ ծաղիկը, էդ աղբիւրը ու էդ պալատի դուռը ցուց տամ իրենց. Հնար չեղաւ նորէն տեսնայի: Այսպէս գըրկուեցայ Աստուծոյ տուած շնորհքից: Շատ լացի ու մէկ էլ գեղը չիջայ սարէն: Իմ հաց ու ջուր կը բերէին. ու ես իմ ոչխարներով կը մնայի սարը: Շատ աղջիկներ քաւուն յիս. շատ մարդ զօրեցին թէ աշխարհ մտի. չի մտայ: 150 տարեկան էի. օր մը յաղթուայ մեղքից, խօսք տուի, աղջկան մը հետ պսակուանք, ու ինկանք մեղաց մէջ. մեղաց զաւակ ունեցանք: Բայց, փա՜ռք Աստուծոյ, մինչև այսօր իմ գլուխը բարձի վրայ չդրուեր ու իմ բերան վա՛յ չկանչեր. — այսինքն հիւանդութիւն

*չէ տեսեր — . իմ օրերը սարերու վրայ ու իմ գործը հովութիւն է եղեր» . եայն, եայն :*

*Առասպել թող լինի այս տեսիլքները, և 'ի չարս* տե-զիէ *գնացողներուն ընենք տեսած ու լսածները : Բայց ինքն Մարգար եթէ 250 տարեկան չկար, անշուշտ 150 տարեկանէն աւելի էր . սոր ապացոյցը՝ ոչ միայն իւր տեսած փաշաները ու առաջնորդները կը թուէր, ու գեղերու և Մշոյ չէնքերուն վրայ ծանօթութիւններ կուտար այլ ինչպէս որ հին գրոց պատմէին Մշոյ մէջ Հայ եւ Քիւրտ ծերերը, վերջին խօսքը կ՚ըսէին՝ «Մանուկու Մարգարին հարցուցէք, որ քան զիս պապու պապն էլ մեծ է» :*

*Մանուկու Մարգարի համբաւը Մուշէն դուրս եղած գաւառներն ալ տարածուած էր . և Կարին նստող ռուսական հիւպատոս վսեմ. Իւլանով պէյը հետաքրքիր լինելով, 1866 թուականին գրած էր յառկայէս Մշոյ Առաջնորդ Վանցի Տէր Սարգիսեանց Գեր. Երեմիա եպիսկոպոսին և ինձ, որ կանչել տալով Մարգարը, տեսնանք զանի, և թէ՛ այոց համբաւածը ու թէ՛ իրեն պատմածը գրենք ղրկենք Ռուսին Կառավարութեան . այսպէս ալ ըրինք : Վերոյիշեալ Իւլանով պէյը այժմ Հալէպու հիւպատոսն է :*

*Աղբիւրներ կան . որոց ուխտի կերթան քամոտ ու քոսոտ հիւանդները . այդ ջուրերով լուացուելով, կամ անոնց ջրով շաղախուած կաւը իրենց մարմնոյն վրայ քսելը՝ կը գործէ առողջութիւն . բայց պէտք է խունկ ու մոմ և յատուկ ազօթք մը մատաղ տանին . և այս թէպէտ շատ տեղեր կայ . բայց ես կը յիշատակեմ մէկը՝ որ Վանայ մօտն է,* Աղբի *կը կոչեն . ուրիշ մէկը՝ որ Մուշն է, և Քրդերէն լեզուով կը կոչեն* զանէ դարմանի*. որ ըսել է աղբիւր բժշկութեան :*

Ծառեր և թուփեր, որոնք սուրբ համարուած են, գրեթէ ամէն կողմը կը գտնուին. անոնց վրայ կը փաթաթեն ախտաւորներն ու անզաւակները իրենց հագուստէն մէկ պատառ դրօշ, և կը համարին բժշկուիլ:

Շատ քարեր կան՝ նեղ և անձուկ. կանայք երբեւ խորհուրդի և ուխտի կ'երթան այն տեղերը, որոնք չբեր են, այսինքն ամուլ. կը փորձեն զիրենք՝ եթէ կրցան մտնել այն ծակէն և դուրս ելլել, կը յուսան ուրեմն թէ պտուղ ծնանին: Զոր օրինակ է, Մշոյ դաշտին մէջ Աւրկուայ քարը, և Աղձնեաց մէջ՝ Ընձաքար. եայլն:

Ժ.

Իսկ որ ինչ լեռներուն, քարայրներուն և զանազան վայրերուն վրայ վէպեր ու աւանդութիւններ կը խօսին, հիանալի և յատուկ ուշադրութեան առնելու բաներ են: Յայտնի բան է զորձեր Աստղիկին Նոյի աղջիկը ըլլալը, կամ եթէ Նոյին չէ, մէկ ամենահին Հայու և ամենամեծ Հայու՝ խելքով ու գեղով պերճացեալ աղջիկ մըն է եղեր. որոյ անունով զուտտ չկայ գրեթէ, որ բլուր մը կամ բարձր սար մը նուիրուած չըլլի, ինչպէս կան և կը կոչուին Վանայ Վարագայ սարի մէկ մասը. և Մշոյ սուրբ Յովհաննու մօտ Տօրոսի գօտւոյն մէկ կտորը, զորս գիտայն կրնայ նկատել թէ զանէ այս երկուքն ալ սաստիկ սեպաձեւ, սեւ, լերկ, և շաքարի գլխու պէս բարակ ցից գլուխ մը ունին, իրարու համանման: Կը կարծեն ոմանք թէ աստղերը գեղեկրու զբօսարան ալ եղած են այս բարձունքները:

Մշոյ դաշտի հիւսիսային արեւմուտքը մէկ լեռ կայ միջակ, որոյ ստորոտով կը քերէ կ'անցնի Եփրատէս գե-

որ Չար սպիտակ ջրերու հետ միացած առուակ և խոխոռ
ընթացքով մը․ այդ լերան տակը Արդոնք գիւղն է, և
Արդոնք գիւղէն բարձր՝ նոյն սարի արօտին վրայ կանանչ
ծառեր, ջրի աղբիւրներ, խաղողի որթեր, չնչին հետքեր .
կ'երեւին, զոր մինչեւ ցայսօր Դաղօնք կ'անուանեն Հայ
բնակիչները։ Այս Դաղօնք անուանէն հետեւցնողներ կան
նոյն գաւառին ՏԱՐՕՆ անուանութիւնը․ որմէ քիչ մը ան-
դին կ'իյնայ նաեւ ՑՐՕՆՔ գիւղը, որոյ համար Հնախօ-
սութիւն կը պատմագրէ թէ «Սեմ իւրն որդւովքն և
տոհմակցովն բնակեցաւ, և անուն ցրուեցան․ վասն
որոյ և յանուն տեղւոյն կոչեաց Ցրօնք․ մինն յորդւոց
Սեմայ՝ Տարբանայ անուն բնակեցաւ անդ․ և անուանե-
ւաց գաւառն Տարօն» և այլն։ Այս լեռը այժմ Քրդաց
լեզուով Քօսուր կը կոչուի։ Մօտ Դաղօնաց, այդ լերան
ճակատը՝ քար մը կ'երեւայ, որոյ մէջ, կըսեն․ չար այ-
րեր կան, և անթիւ օձեր կը բնակին այդ այրերու մէջ
օձերը ունին երկու թագաւոր և թագուհի․ թագաւորը
սպիտակի պէս քարակն ունի իր գլուխը, այսինքն թագ
և թագուհին բոցագոյն բրչեր, բրչամ, այսինքն վարս.
ունին զօրավարներ, թիկնապահներ․ և առաջին բնա-
կու կ'երթան երբեմն Դիարբաքրու հողը, ուր տեղը կան
նաեւ օձերու ուրիշ թագաւորներ, բայց անոնք սար
հարկատու են և ռայայ․ երբ անոնք կ'ապստամբին,
կ'երթայ սա ջանգ ու կռիւ, ու չար կոտորած կ'ընէ, և
աւարով ու գերիներով կը դառնայ։ Այսու Մշոյ բնա-
կիչները և իրենց նախարարները Տիգրանակերտու գա-
ւառներուն վրայ առաջները միշտ տիրապետութեան և զա-
նոնք ծառայեցնելուն հետքն է կը պահեն թերեւս։

Օձեր ալ կան, որ Մշոյ աշխարհի պահապաններն են.
և գիւղացւոց վնաս չեն տար։ Տեսակ մը օձերու համար
ալ կը պատմեն թէ տներ և ջաղացներ կը բնակին, և

իրենց բնակած տան բաղդը անոնցմով կը յաջողի եղեր։

Հետեւեալը իբրեւ առակ կը պատմեն, թէ՝ «Գեղացի մը՝ որ արտեր ունէր և ջաղացներ՝ և գեղացւոց մէջ բաղդաւոր ու հարուստ մէկն էր, իւր յաջողութեան բաղդը կը պարտէր այն սև օձին, որ անոր տան մէջ կը բնակէր։ Մէկ հատիկ զաւակ մը կ՚ունենայ այս գեղացին և որովհետեւ օձը սովոր էր տան մէջ համարձակ շրջելու երախան օր մը օձուն հետ խաղալով՝ անոր պոչը իւր ափին մէջ սաստիկ կը ճզմէ. որքան կը ջանայ օձը՝ կարող չլինիր իւր պոչը ազատելու տղուն ձեռքէն. ճարը հատած՝ կը խայթէ տղուն թաթիկը. տղան կը թողու պոչը, ու կը թունաւորի միանգամայն. օձը իւր խայթածին ու թունաւորածին հետեւանքը գիտնալով՝ կը կը փախչի տան մէկ անկիւնը կը կծկի. ժամեր կ՚անցնին և տղան վերջապէս կը մեռնի։

Տղուն հայրը սաստիկ կսկիծէն ուրագը կը վերցնէ օձին կը զարնէ. օձին պոչը կը կտրի և օձը իւր գլուխն ու մնացեալ մարմինը առած կը փախչի տունէն, ու գեղէն դուրս քարերու մէջ կ՚ապրի։ Օրեր կ՚անցնին, բայց հետզհետէ այդ գեղացւոյ բաղդը կ՚աւրուի. օր մը իւր կնոջ հետ կը մտածեն թէ, Երթանք մեր օձը նորէն մեր տունը հրաւիրենք բերենք, որպէս զի մեր բաղդը դառնայ վերստին. և կ՚երթան քարերու մէջ կը կանչեն իրենց օձին. օձը պատասխան կուտայ թէ, «Ինչպէս ձեզ՝ նոյնպէս ինձ փափաքելի է այդ, բայց ա՛լ անկարելի է. քանի որ դուք ձեր զաւկին մահը յիշէք և ես իմ պոչը, իրարու հետ չենք կրնար հաշտ ապրիլ»։

## ԺԱ.

Մշոյ դաշտի արեւելեան հիւսիսը՝ կայ մէկ լեռ Նեմրութ անուն, որոյ մէկ երեսը կը նայի Պուլանըխայ և Մանզ-

*կերտու կողմը. մէկ երեսը Խլաթն է առ ափն Վանայ ծովուն, և միւս երեսը Մշոյ դաշտն է. իւր թևի տակն ունի նաև մէկ փոքրիկ և լրմէն բաժան լեռ մը տանձաձեւ. սև և լերկ. այս փոքր լեռն է Գրգուռ, որոյ ներքևն է Ջրհոր գեղը. Ջրհորի ձախ կողմն է Շամիրամ գեղը, և առջևը՝ Դատվան գեղը Վանայ ծովուն նաւահանգիստը: Ռահվայ դաշտն որ անհագին տարածութեամբ և ամայութեամբն կ'երկարի այս լերանց ստորոտէն մինչև Բաղիշոյ ձորը, և մինչև Խոյթայ լեռը, և որ իւր մէջ ունի քանի մը քարաշէն խաներ: Այս Ռահվայի ձմեռը և ձիւները անասելի չափ են ամեն տարի, և բուքը պակաս չէ. ուղևորները իրենց պատսպարան կ'ընեն այդ խաները, և շատ անգամ քանի մը օր կ'արգելուին անոնց մէջը փակուած. ասոնք կը լինին որջ աւազակաց և շատ անգամ միամիտ և անճար ուղևորները հոն ապաստանած ժամանակ՝ կը լինին բաժին այդ չարագործաց. նաև զանազան արհաւրաք լի պատմութիւններ կան այդ խաներուն վրայ:*

*Դատվան գեղէն Ջրհորի սահմաններով դէպ 'ի Նեմրութ 'ի դաշտակողմն գնալով՝ կը տեսնես կարգ մը տնկուածի կամ կանգնուածի պէս սև քարեր, որոնք հեռուէն և մութ ժամանակ կրնան խաբել զմարդ՝ թէ կարաւան են անոնք, կամ մարդ և ուղտ: Տեղացիք* Բէյի ուղտեր *և* ուղտպաններ *կ'անուանեն զանոնք, և որոց համար կը վիպասանեն ու կ'ըսեն թէ, «Կռապաշտ թագաւոր է եղեր Բէյը, և մեծ զօրքով եկեր Հայոց թագաւորի ու երկրի վրայ կռիւ. Հայոց թագաւորը Աստուծոյ ձեռնով սպաններ է զԲէյ և հաներ Նեմրութա գլուխ. այն տեղը փորեր թոնիր չիներ, մէջը կախեր վառեր է: Աստուծոյ հրամանքով այն կրակը ջուր է կտրեր, զմոխիրն հողի տակ իջուցեր, որ չեղնի քամին անոր փոշին տանի: Բէյի մարդիկ և ուղ-*

տեղին ալ իրենց փոխէն քար են կտրեր: Մինչեւ այսօր թօնիրն ու ջուրը կայ. եւ այն ջուրն է որ տարի տարիով կ'իջնայ Մեղրագետի ակնէն կը բղխէ եւ այլ գետը կը կազմէ»: Մեղրագետի ակն կլորակ աւազան մի է Աչոյ դաշտին մէջ, Օձ քաղաքի մօտերը աւազանի չուրջը սալարած են քարերով, եւ անոր մօտ գմբէթ մը կայ: Ջուրը այդ կլոր աւազանին ընդարձակ գոգէն կը բղխի աւազներ հանելով իր հետ. եւ պղպջալով կ'ելլէ ոչ մէկ տեղէ, այլ բազմաչեայ: Այս ակի բուն բղխման վրայ ընտիր մէջեր ունին տեղացիք: Կը ցաւիմ, որ սա ձեւն չունիմ զանոնք գրելու: Մի միայն ապացուցանելու համար թէ այդ ջուրը Նէմրութայ գանգի լճէն է, հանեւ-նալը կը յիշեմ, որ կը պատմեն: Իբրեւ թէ՝ «Հովիւ մը խաչինք կ'արածայլներ Նէմրութայ լճին եզերքը. ոչխար դարձնելու համար՝ ըստ սովորութեան՝ իր ձեռքի ցուպը կը ձգէ, ոչխարը կը դառնայ, հովուի փայտը լճին մէջ կ'իյնայ, եւ ջրի պատերքին մէջ կը կորսուի: Օրեր կ'անցնին, որ մը այդ հովիւն իր ցուպն ուրիշ հովուի մը ձեռք կը տեսնէ, կը պահանջէ, հարկ կը լինի ապացուցանել. կ'երթան գեղի ծերուորին քով. եւ ցուպին բուն տէրը կ'սկսի իւր ապացոյցը յառաջ բերել թէ, Ես յիսուն տարիէ հովուութիւն կ'ընեմ, ամեն մէկ տարին մէկ մէկ ղազի քանոնց ոսկի վարձք առեր եմ, եւ իմ ցուպին մէջը փորելով՝ ոսկիներս հոն լցեր եմ: Ցուպը կը տան իրեն, կը բանայ իւր փայտէ քաշկին բերան, իրօք 50 ոսկին վար կը թափի. կը տիրէ իւր ցուպին: Եւ երբ գտնող հովիւին կը հարցնեն թէ ո՞ւստի ձեռքդ անցաւ այս փայտը, կը պատասխանէ, — «Մեղրագետի ակյան բերանը մըլած էի ոչխարներս, ջուրը իր փորէն դուրս հանեց զայն»: —

Արդարեւ նայելով Հայոց ձորին, ուր Հայկի եւ Բէլի

ճակատամարտը եղեր է, եւ զի՞նչ առաջնորդէն զինք եւր Հայոց ձորէն Հարք գաւառը դէպի գառնայ Հայկը իւր բնիկը, ուզէին այս անգամ ուղիղ կուգայ, եւ այս Նեմ-րութ լեռը, ինչպէս անունն ալ Նեմրութ է, որ Բէլայ անունն է, իւր դիրքով միայն յարմարութիւն ունի Խո-րենացւոյն ասածին, թէ «Հանեալ կախէ 'ի լեռան մի բարձր զմարմինն Բէլայ 'ի տեսիլ կանանց եւ որդւոց»:

ԺԹ.

Կայ այնպիսի քարակարկառ խումբ մը քարերու ալ Վանայ ծով Ադրիւ քարեր բուսած ժայռին կից, որ հեռուէն եւ 'ի մէջն նայողները կը կարծեն թէ խումբ մը մարդոց են այն տեղ. ասոնց կ'ըսեն հարսն ու փեսայ: Բայց որոշեալ երկու չեն, այլ շատ. մէկպաքն ալ կը համարին հարսնեւորները, եւ անոնցմէ երկուքը՝ որ թեւ թեւի՝ դէմ դէմի են, ասոնք են հարսն ու փեսան. ու-րիշին գլուխը կորաձեւ է փեսայն նա է. իսկ միւսը որ ուղիղ է վերէն վար, քօղաւոր հարսն է նա. եւ իրենց առջեւը մեծ կորագլուխ մ'ալ կայ, այն ալ տէրտէրն է, կ'ըսեն, գտակ 'ի գլուխ: Ասոնց քարանալու մեղքն ու պատճառը մանրամասն ու երկար կը պատմեն. բայց ես չեմ կրցած միտքս պահել, որքան կը յիշեմ բովանդա-կութիւնը այս է, թէ՝ «Ասոնք առանց իրենց հօր մօր կամ՚քին պսակուեր են. եւ սովորութեան ու կրօնական աւանդութեան հակառակ՝ արեւու ծագմանէն առաջ ժա-մէն ելեր են. ասոր համար Աստուած եւ ծնողք զիրենք անիծեր են. եւ այսպէս քար կտրեր են:»

Ազդու օրինակ որդւոց՝ իրենց ծնողաց եւ օրինաց հնազանդութեան ու յարգանաց:

**ԺԳ.**

Կայ և մի տեղ Վանայ հիւսիսային կողմ Գուրաշէն գիւղին մօտերը Շեղ ջայ դարը ըսուած հողային բլուրը. որոյ համար կը զրուցեն թէ, «Մէկ հարուստ բայց ագահ կալուածատէր քաղաքացւոյ ցորենի շեղջ է եղեր. կալի ժամանակ, ինչպէս սովորութիւն է մինչև ցայսօր, Քրդերու շեխեր ու ֆախիրները, Հայոց տէրտէրներ ու վանականները գեղ գեղ կը շրջին ցորեն կը ժողվեն, նոյնպէս և ամեն կարգի աղքատները ու չունեցողները, մշակներ ու վարձկանները կալմաս կ'առնուն կալատէրներէն. մրջիւններու կարաւանը և ճնճղուկներու երամը թիւ ու համար չունին, որք կը կրեն ու կրեն: Բայց այս ագահ տանուտէրը ամենայն խստասրտութեամբ կը հսկէ իւր ցորենի շեղջին, և ամենևին ողորմութիւն չտար. խեղճ սարեկներ ու արտուտներն ալ կը քարոտէ: Աստուած կը պատժէ ասոր խստասրտութիւնը և բոլոր այդ ցորեն իւր տեղը կը դառնայ հողի շեղջակոյտ մը. որոյ շուրջը կը ցուցնեն նաև այս մարդու սայլը, որ որայները բարձուած կուգար, սայլորդներով ու սայլին լծուած գոմէշներով համդերձ քար կտրած, նոյնպէս և կալուածատէրը որոյ սիրտն արդէն քար էր»:

**ԺԴ.**

Լէզքը իւր անունով և հին պատմութեամբ յայտնի է. ուր Շամիրամի աստուածները մեր Արայ գեղեցկին մեռած մարմինը լզեր ու կենդանացուցեր են եղեր. և Առալեզք անունով կուռք ու աստուած շինեցին պաշտեցին այն ժամանակ Հայեր այս գեղի բարձր գագաթին ուր այժմ Ամենափրկչի մատուռն է. և Աշխարհամատրան կերպին մեծամօրով ուխտ կ'երթան: Ուր բնակա-

գիրկերով քարեր լցուն են. և ձուլածոյ հին պղնձէ կեն-դանեաց փոքրիկ արձաններ գտնուեցան մեր օրերը դեռ ևս քանի մը տարի յառաջ: Ուր և խնչեր կան, ինչ Լէզգեաց բերդերը, և անոր ստորոտները փորուելու, քննուելու:

Այս Լէզգը գիւղի մօտերը կայ մի թոնիրի ձևով աղ-բիւրի փոսակ կամ ջրհոր, որ Սուրբ թոնիր կը կոչեն, ուր յաճախ գնացողներ կան. շատերուն իբրև ուխտա-տեղի, ոմանց ալ հետաքրքրելի: Մի միայն մէկ ձուկ կերևի այդ ջուրին մէջ. և որին որ երևի, անոր բաղդն ու ուխտը կը կատարուի: Դա՛ կնկան կերպարանք ունի եղեր. և արծաթէ օղն ալ խել քթին անցուցած՝ կը տես-նուի տակաւին: «Երեցկին է եղեր զա. կին կարի գե-ղեցիկ. երբ նստած թոնիրի շուրթն հաց կը թխէ, աղ-քատ մը կուգայ հաց կ՚ուզէ, կուտայ: Կերակուր կ՚ուզէ, կուտայ: Թշուառականը կը համարձակի նաև պագ մի ուզելու. երեցկինը կը վարանի. բայց կը մտածէ թէ աղքատ թեւմարզու է. ինչ կայ, մե՛ղք է. զուցէ մարդ է. պագն ալ կուտայ: Եւ յանկարծ նոյն վայրկենին երեցը ներս կը մտնէ. երէցկինը ամօթէն ու ահէն ինքն զինքն կը ձգէ ի թոնիր կրակին մէջ. տէրտէրն ալ զինքն ի վրէն բայց տէրտէրը կը մրկի. իսկ երէցկինը՝ կրակին ջուր դառնալով, ինքն ալ ձուկ, Աստուծոյ հրամանքով յաւիտենական յիշատակ կը մնայ նոյն անդ»:

ԺԱ.

ՍԻՓԱՆ լեռնադաշտի մը անունն է, որ Նէմրութի զօտին է, բարձրադիրք. և կ՚երկարի յարևելս կապուելու այն մեծ ու շատ բարձր սարին ոտքը, որ Սիփանայ Սար կ՚անուանուի. որպէս թէ Նեմրութն լինէր Բէլը, և Սի-փանը մեր Հայկ, որ զԲէլն իր ոտքին տակ կապած է:

Վերին և Ներքին Սիփան անունով Հայոց գեղեր ալ

կան այս զօտիին վրայ, և ուրիշ զանազան գեղեր ալ։ Միւս անուանի է խաղաղէտ և օդաւէտ լինելով. ուստի կը տեսնուի հոսկէն Պուլանըխայ մէկ մասն և Մանազկերտ. իսկ առջեւն են Խլաթ ու Բուր գեղերը. Արծկէն և Բուր գեղերը. Խոտանց մեծ գեղը. Սքանչելագործի վանքը, եայլն։ Այս առջեւի մասն անուանուած Վանայ ծովու երեսն է, և ընդհանրապէս ծառազարդ են բնակութիւնները, և բաւական զառ ՚ի վեր դիրք մը ունենալով, պտղատուական և առատ պաղպաջ ջրեր կը հոսեն. ընդկէջը կը վայելէ Վանայ ծովու անմահական օդը, ունի գեղածիծաղ երեսը, Վանայ բերդին ու իր այգեստանեաց, Արտամետու ծառաստանեաց, և յանկոյս եղած ծովեզերեայ բոլոր շինից և ասոնց սքանչելի տեսարանը, ամենայանկալին Վարագայ լեռ, Հայոց ձոր, Ռշտունիք, Տատախու և Մոկաց լեռները, Նարեկայ ու Ադ տէրը, Ալթամարայ, Կտուց և Լիմ անապատաց կղզիները, և սուրբ առաքելոց երկնանման գմբէթները։ Ծովու հարաւային կողմն ու Կորճայնից սահմանները, և ծովու երեսը լողացող առագաստաւոր նաւերը։ Երբ մէկ վայրկեան այս Ախթամայ հովիտը, թաւալէ՛ր, հանգիր, զինչ անմահական ծաղկանց և զովարեաց մէջը, ուր վտակը կը խոխոջէ, ուր առուակը կը զայրայէ, ուր կոտանքը կը կայ. ուր ծովը առջեւդ կը ծփծփայ. երջանկացիր քիչ մը։ Է՜, ահ եղ, Բերդա Մարգալի խաղաղին է այդ. այս տեղը Համամեցի Բըղերու տեղն է։ Ե՛լ, քիչ մը յառաջ երթանք. ահա Ախթմայ սարը, այդ առնգին, բարձր, մանեակերպ, սարը զոր և Թովմաս Արծրունին Մանէք կ՚անուանէ, և Գերմանացի Վակները՝ Գառալ լեռ։ Բնակիչները մէկ բան կ՚երգեն այս լերան վրայ երբեմն հին երգ, և կ՚լան.

— Նայոց տարւոյն եկաւ ի Ախթան,

Ասաց,

«Սիփան, ո՛ւ գլխ, ո՛ւ գլխ»:

Սիփանն ասաց,

«Գըմա՛ լի Մասիս, գըմա՛ լի Մասիս,

«Որ մեծ է քան գլխ, որ բարձր է քան գլխ»:

Տաղամն Կորդուաց լեռներէն գալով առ Սիփան Գրդուաց գլխով անցեր, և քամելով կամ գրդռաելով այս լերան ՍՈՒՐՈՒԽ գլուխը առջևր անցեր է եղեր: Սիփան լեռը մեծափառաբար իր ձիւնոտ գլուխը ամեն բարձր լեռներէն վեր կը ցուցնէ Վասպուրականի և Տարօնոյ բոլոր կողմերէն գրեթէ. իր ծոփայքն երևալ խիստ զուարթ է, բայց մէկալ կողմը՝ զոր տարածուած է երկարօրէն Մանազկերտու դաշտը պտտիկ պտտիկ ու կլորակ սաւանաձևաբար բլուրներ ունի ձևացուցած՝ որ սև ու քարուտ են:

Միտքդ բե՛ր Յոբը որ իր ցաւոց օրերու մէջ պառկած լինէր մէկ կշտին, ծունկ ծունկի դրած, ոտները ձիգ պարզած, մէկ ձեռքի արմունկը գետին՝ և թաթը երեսին, գլուխը բարձր պահելով՝ կրթնած, ուքար. թափէր արցունք իր աչքերէն, և այդ էր Սիփանայ վառանքը:

Եռային որդերը իր մարմնի վրայ, և այդ էր Հասնանցի Քրդերը:

Թափէին իր գլխու մազերը, որպրուէր գանգի մորթը, և երեւէր լերկ ոսկորն ուղեղին. և այդ էր Սիփանայ ձիւնոտապատ ու սառոյցի որդերով եռացած գագաթը:

Թշնամանէին զինք իր հօրն ու մօրմերը, դրացիներն ու բարեկամները, և ասոնք էին Լաթառայ չեխեր ու տաւարի փախինները:

Իր կշտին ու կողին վրայ հանէր խոցերը, ու այդ նման էր Սիփանայ սև սև կոյս կոյս բլրակներուն:

Արքէն վաղուց մեռեր էին իւր զաւակք ու որդիք. թալան տարեր էին իրեն ոչխարի հօտն, անդեայք, ուղտք, էշք և ջորիք:

Այն մեծ տարածութիւն Մանազկերտու դաշտին, որ քար ու քարայլ — այսինքն մանր և մեծ ժայռերով — լի է, ամայի, անմխիթար, և տխուր, դու ասես լինէր Յոբայ աղբիւսը. և խեցիները, որոնցմով իւր վիրաց թարախն է քերեր:

Այս է այդ լեռան համառօտ նկարագիր:

Բայց վէպը կը պատմէ բնակչաց բերնով թէ՝ «Սիփա-նայ սարը Հայոց մեծ թագաւորի բերդն է եղեր: Թէ՝ մէկ ծածուկ դուռն կայ այդ սարին, որ Մանազկերտցի Քիւրտ մը միայն գիտէ, և սորա պապենական ակղհա-կան աւանդութիւն է որ միայն հայրն իւր որդւոյն ծա-նուցանէ: Թէ՝ տարը տարին միանգամ այդ Քիւրտը Սիփանայ գանձն ներս կը մտնէ կ'երթայ, և քանի մ'օր դուրս չելլեր: Թէ՝ այդ Քիւրտը՝ թէպէտ և դուռը ցոյց չտար, բայց կը պատմէ թէ՝ անհուն քարայր մը կայ շինուած Սիփանայ տակ, կամարակապ ու հաստատ շէնք. տասնըկ քամի կը խաղայ մէջը, բայց լոյս չկայ: Թէ՝ անոր պալատներ, շտեմարաններ ու հրապարակներ կան մէջը: Թէ՝ մէկ քանի երկաթէ դռներ կան, որ միշտ գոց են. և մենք կը կարծենք որ թագաւորի նակերը — գէնքեր այն տեղ լինին: Թէ՝ ամբար մը լցուն եփած չոր հաց կայ, պաքսիմատ: Թէ՝ մեծ գետ մը քարայրի մէջէն կ'անց-նի: Եւ այլ շատ աւելի բաներ, որոնք չկրցայ ամբողջն խմբել ու գրել: Ափսո՛ս: Սիփանը այդ չքնաղագեղ գաւառներու սա հարաւակ բնակչաց Ողխաղաւն է և Պասնոյ. իրենց աչքն ու դիտողութիւնը անոր կը նային. Մուշայից և քաջաց մտնդամանը չերեւար. կը դառնան զայն: Անտառները անոր մեծ ու ընդար-

ձակ խորշերու և այրերուն մէջ կ'ապաստանին, զէնքի և ձիու կրկնութիւնը Սիփանայ լեռնադաշտին մէջը կ'ուսանին. գեղերու հօտաղները և դաշտը հաց բերող աղջիկները՝ երբ իրարու սիրահարին, կ'առևանգեն զիրար և Սիփանայ կ'ապաստանին: Սիփանայ դալարուէտ մարգերու մէջ վրանի տակ բնակող ոչխար կթող Բիւրա աղջիկները՝ երբ երիտասարդ Բիւրա խոռք հովուի մը սիրահարին, նախիրէն կը բռնեն կթած ձի մը, և զոյգ հեծած անոր քամակին ուղղակի կը քշեն Սիփանայ սարի սարաւանդները: Ձիու գլուխը ետ կը դարձնեն, վարոց մը կը զարնեն. ձին կը դառնայ իւր երամին. ամենայն հաւատարմութեամբ գաղտնապահ լինելով և ոչ ումեք պատմելով իւր բեռին ուր լինելը: Թէպէտ գիտեն այ փախուցիչաց պապն ու մամը, բայց չեն երթար ետևէն, պատկառելով կամ պատիւ պահելով Սիփանին, ինչպէս Լռնարայէն ետ չեն առնուիր հոն փախչող և ապաստանող քաղաքական յանցաւորները: Այս է պատճառը որ այդ Հասանանցի Բրդերը իրենց քաջաց յաղթելուն երգը, կամ քաջարար մեռնելու եղերգը, միշտ Սիփանայ կոչումով կ'ողբերգեն, անոր անունով կ'օծեն իրենց տաղին տողերը, և բանին բառերն ու տուները, և անոնց սիրահարական շատ մը երգերու զարդն ու խաղն Սիփանայ սարն է. թէպէտ լինին ասոնք Բրդերէն լեզուով, բայց շատերու յօրինողք Հայեր են: Նշանաւոր է այն խաղը, որ կ'սկսի այս բառերով. «Սարէ Սիփանէ...» որուն մէջ կը պատմուի սեւ աղայի մը ու աղջկան մը վէպը, որք միմեանց սիրահարելով փախած են Սիփանայ գլուխ. և երեք օր երեք գիշեր առանց հացի զիրար սիրելով միայն ապրած են. բայց երբ քաղցը նեղեր է զիրենք. սեւ տղան հրացան առեր ելեր որս մը զարնելու, գտնէ զայն ուտեն ու քիչ մը կազդուրուին. աղջիկն ալ

քարի մը վրայ կանգնած կը դիտէ. սեւ ագռաւն կը պտտա-ռի եղնիկի մը, հրացանը կը պայթի - կը դիպցնէ եղնիկի կողին, արիւնը կը հոսէ, եղնիկը կ'եղնի վիրաւոր, եւ կ'ուզէ փախչիլ, բայց կ'իյնայ...: Սեւ աղէն գնդակը կը ձգէ որ եղնիկը բռնէ չփախցնէ. և ահա խուքն ալ գահա-վէժ կը հասի քարերէն, և կոտր կոտր կ'իյնայ մեռնալ: Աղջիկը ծնկերուն զարնելով, մազերը փետելով, կը նստի քարին վրայ, աջ ձեռքը երեսին, ձախ ձեռքը վէր ծծերուն դրած, կ'սկսի արտասուաց ասացուածով մը իւր ողբը ողբալ. յորում կը կշտամբէ սեւ ագռաւի խստասրտութիւնը թէ՝

« Ինչո՞ւ մեռնիլ եղաւ ողի:

Թէ՝ ինչո՞ւ զարկաւ եղնիկին, որ գուցէ այն ալ սիրական մ'ունէր իրեն այս վայրերուն մէջ մեզ պէս:

Թէ՝ Ահա սիրոյ Աստուածը արդար ու վաղահաս բրաւ իւր դատաստանը:

Կ'անիծէ խստասիրտ մարդիկ՝ որ արդեւք կը լինին բնական սիրոյ. և այսպիսի ողբերգ ասէ կը լինին:

Թէ՝ Իրեն համար եղաւ լար խոքն, իրեն համար և իրեն հետ կը մեռնի»:

—Եւ ահա խեղճ խոքն ալ կը գահավիժէ քարերէն ի վայր սեւ ագռաւի սիրոյն ու մահուանը վրայ:

## ԺԶ.

Վանայ ծովու չքնաղագոյն ընթացքով կ'սկսի Ալա-տաղի գօտին, որ է Ծաղկէ լեռ, որոյ ստորոտները կ'երթայ մէկ կողմէն Արաչկերտ: Բայց մենք Ալխալխան Արծէշն, Արճերանին և Բերկրին հանդերձ շատ մը Հայաբնակով ու Հայու բնակիչներով լի գիւղեր ու գմբէթ վանքերը, եկեղեցիները, գաղթականի հովիտները, և արտ ու անդաստան, Բենդի մահու գետը, և ասոնք չափ շատ ու մանր տուրեխ ձորերը անտեսելով՝ 'ի հիւսի-

սոյ գտանանք զէպ 'ի Վան. և անտ Բաղ բլուրը հոն է. վայր անմահն առ ծովուն. Ջրով, խոտով և օդով անոզուգական. ինչպէս Նաև անուանի Նախիրական: Ոչ այս կողմերու և ոչ Ալատաղի սարին ու քարայրներուն, ոչ Թոնրակի հրաբուխ լեռան, և ոչ անոր կողմերէն բղխած ծծումբի ջուրերուն, ոչ Արայու դաշտի 366 աւեր գեղերուն, և անոր մէջ ցցուած տապանագիրներուն վրայ եղած վէպերը՝ չեմ կարող յիշել: Եւ գտանանք Նորէն Սիփանայ տակը, և անցնինք Մանազկերտ:

Թաւզըն անուանով Բլրու գեղ մը կայ հոն, և չէխ մը որ անկիւնաւոր տարբերէ հետէ տասը ազգ և տանը այս գեղն է եղեր թէ: Ուրեմն քայլ մեծութեամբ գերեզման մը կայ՝ այս չէխի տան առջև, գեղի բերան, որ քարակոյտով մը բարձրացած է. անոց ու դարձ բնակիչները և մերձակայ Հայերը այդ գերեզմանին կ'ըսեն Ազնաւուրի գերեզման. իսկ չէխը կ'ըսէ՝ իմ Նախնիս է, զոր կը մեծարէ իբրև մարգարէի շիրիմ: Այդ գերեզմանը և Թաւզըն գեղը Մանազկերտու մէջն է, ուր էր Հարք. և ազնաւուր, որ է Ազնաւոր, Ազնիւ, Ազն բառը՝ իբրև տոհմային գլուխ, տանուտէր ազգի՝ նշանակութիւնը կուտայ: Ես չեմ կրնար վարանիլ ըսելու թէ, զոր՝ գուցէ Հայկին, կամ Հայկեանի մը, կամ վերջապէս Հայ Նախապետի մը գերեզմանն է: Այսպիսի մեծագիր և Ազնաւուր անուանով գերեզմաններ կը գտնուին ուրեք ուրեք, և այդ անունէն ու մեծութենէն իմն կը թուին թէ Հայոց Նշանաւոր Հարանց հնկայից, կամ Նախարարաց շիրիմ լինին: Իսկ չէխերու տիրելուն երբէք զարմանալու բան չկայ. տանք կամ հայութենէ դարձած են կամ անհայ գանելով այդ տեղերը եկեր տիրեր են, և իրենց բառովն ըսելով՝ օնախը շիներ են: Ճեխերը տոհմական օնախ կ'անուանեն իրենց տները, իբր թէ հոց, թանապուր մը

և տաք ջուր մը վազած օճախին վրայ միշտ պատրաստ ունին տաք իրենց տուն երթալ գնացողին, ընդունիլ հիւր, լինել պաշտպան և պատսպարան իրենց զինուորներուն. բայց չեխտելեան անունով՝ շնորհ ունեցած են տէրութենէն շատ մը գիւղեր, ընդարձակ հողեր ունենալ իրենց, անոնց հողային տուրքերն առնել գեղացիներէն, որ իրրև տեսակ մը ծորակ ունենալ է, և իրենք բոլորովին ազատ լինել հարկէ, և այլն: Այս տեսակներէն շատ կան Պուլանըխեները որ է Աղահունիք, Մշոյ դաշտը, Վանայ գեղերը, Խիզան, Մոկս, Ռշտունիք և այլն:

ԺԵ.

Ապրի գեղը պուլանըխայ մէջն է. մեծ օճախներ կան չիխերուն այս տեղը, որոց ծերերէն լսելով պատմողներ կան թէ Սոյա նախինք եղեր են Հասան եղբայրներ: Ցոյները Հայաստանի մէկ բաժնին տիրած էին արդէն մեր Արշակունեաց անկման ժամանակները. իսկ միջին դարու ախերներէն՝ մեծն Հայաստան, որ կարելի է սակ այսօրուան Տաճկի Հայաստանի մասը, բոլորովին Ցունաց բաժինն է եղեր. Կարինը՝ Ցունաց կուսակալութեան էր և գահը: Այս մեր ցոյց տուած վայրերն՝ Կարնոյ թեմերն են. անկասկած չէ որ Ցունաց զաւթականներ եկած լինին այս կողմերը իրենց եկեղեցական ուխտին, որոնք Բաղկեղոնի բանակները կը կոչէին բարբարոսէս. և կրակել տալու Հայոց տուները և գաւառները, պաշտօնեայ գոյով Քրիստոսի, պաշտօն վարելով մեղերուն Ցաղկերան: Այդոնց թողուցած աւերակները դեռ կը մնան ու կը ծխան Հայաստանի հողին վրայ, Հայոց սրտի և գլխի մէջ: Անոնք վանքեր և եկեղեցիներ ալ ունեցած եղեր են, ինչպէս մինչև այսօր ցոյց կու տան Տուշարայ գաւառի մէջ: Վարդուայ Գմանեմիր գեղը՝ հիւս բլուր մը

քակեցին եկեղեցին շինելու համար քար հանելով. ըլուրի տակէն տաճար մը երեւցաւ, որ բոլորովին յունական ձեւ եւ շէնք էր։ Ուրիշ շատ կան այդ Շուշարայ, Վարդուայ եւ Խնուսայ կողմերը։ Վերջիշեալ Ապրի գեղի շեղերու տան — օճախի — մօտը քար հանելու համար փորելով՝ գտած էին մէկ մարդաչափ բարձրութեամբ քարէ արձան մը մարդակերպ քանդակուած, որուն վրայ Յունարէն գրեր կան եղեր, զոր Մամիկոնեան Վարդան Աղան վերցուցեր տարեր էր շեխերէն խնդրելով։ Արդ այդ շեխերը, ինչպէս ըսած են, ըլլալով Յունաց եպիսկոպոսներ, եւ ինչպէս որ են նոքա ցարդ՝ հողի, գեղի և ագարակի տէր, ու ճոխ մարդիկ, Արաբացւոց արշաւանաց ժամանակները՝ չուզելով իրենց ունեցած կացութիւնը կորսնցնել, փոխեր են կրօնքնին, և իրենց առջի վիճակը պահելով միանգամայն և կին առնելով վառ պահեր իրենց օճախը և շարունակեր են մինչեւ ցայժմ։ Ասոնք են սաստիկ մոլեռանդ և Տէրութեան օրինաց հակառակ շատ անգամ զՀայերը կեղեքող. և այս ախտը կամ բռնութիւնը Քաղկեդոնականաց թշնամութեան յատկութիւնն է, քան Մահմետականաց։ Ես կը հաւանիմ ընդունիլ այսպէս...։

ԺԲ.

Մանազկերտ Բուքան խայա անունով մէկ գեղ կայ, և այդ գեղին կուշտը դարձեալ մի գերեզման Ագնաւուրի որոյ երկայնութիւնը քանի կանգուն է կ'ըսեն տեղացիք. բայց քիչ մը չափազանց է։ Այդ քարերը, որ ակօս ակօս իբրեւ պարտիզի թումբ և տաւ են, պարտէզ է եղեր, և Բարապարտէզէն գեղին անունը տաճկերէն ըսեր են Բուքան խայա։

Ահա և անոր վէպը։

Այս մեռած Ազնաւուրը հեռու տեղերէ մը չքնաղ և նուրբ հրեղէն աղջիկ կը յափշտակէ կը բերէ այս գեղը. պալատ կը շինէ, կը նստեցնէ մէջը, պատուհանները կը բանայ մեծ դաշտին և Մուրատ գետին վրայ, և ինքն պալատի չուրջը կը շրջի հսկելու որ իւր նախանձորդները չգան փախցնելու աղջիկը։ Աղջկան անունն է Շիրին,— Սիրուն—։ Բայց որքան ջանքեր ըրած է, չէ կրցեր յինքն յանկուցանել Շիրինի սէրը. նա միշտ զանազան և անհնարին պայմաններ կ'առաջարկէ եղեր Ազնաւուրին, որոնցմէ մէկն է նաև այն. եթէ Ազնաւուր կարող լինէր փորել ու վարել այդ քարեր ու բօսթան անել, և խիյար հասցնէր Շիրինին, Շիրինը ուտելով զայն՝ պիտի սիրէր զԱզնաւուրը և լինէր անոր կինը։ Բանն յարմանալ երկաթէ բահ մը ձեռք կը ձգէ Ազնաւուրը, աշխատելով այդ քարերը կը փշրէ ու երկու հող պարտէզ կը շինէ, խիյար կը անկէ կը հասցնէ, կը տանի Շիրինին մեծ վստահութեամբ և վերջին յուսով, թէ լրացած են այլ ևս պայմանները. ահա պիտի միանան միմեանց հետ։

Շիրինը կը խորամանկէ Ազնաւուրին, թէ քուկդ եմ այսուհետև. դէ՛ դնա՛ Մասիսայ դիւերէն մէկ ամանն հարկայ բեր ուտենք՝ ու զխիյարն ի վրէն. ու մեր հարսնիքն ընենք։

Ազնաւուրը հարբած ու շշկռած Շիրինի սիրով, կ'երթայ, ու ապարանքի դռները բաց կը թողու։

Գիտէ՞ որ Շիրինի բուն սիրահարն է, ու միշտ Ազնաւուրի պալատին ետեւէն ու ստուերի տակէն կը շրջէր, ու աչքով, ընքով պատուհանէն Շիրինի հետ կատակ կ'անէր, այս առթիւ կը մտնէ ապարանքը. կը գրկէ զՇիրին, և գիրար կ'առնեն կը փախչին։

Ազնաւուրը եր դառնալուն կ'իմանայ բանը, ու զարմանալով կեցած անհատ տարրին՝ և խորամանկ ընդա-

ւորութեան վրայ, թէ ի՛նչպէս կը խաբեն ու կը յաղ-թեն աշխարհի ամենէն զօրաւորներուն, ալ չուզեր հաւ-ւէն երթալ, ալ չուզեր աշխատանք տալու անգամ:

Իր բանակին ինքզինքն կ'ապաւինէ, ու գեղի կիները ձեռ կը կապեն Ազնաւուրին վրայ, եւ երկաթապատները կը փրցնեն կը թափեն:

Ազնաւուրին դեւ ալ կ'ըսեն վիշապանք:

ԺԹ.

Դեւը, սովորաբար ժողովրդական վէպերու մէջ դիւ-ցազնի նշանակութիւն ունի, կամ հսկայի, ախոյեանի: Այսօր եւս երբ յաղթող եւ հսկայ մէկի մը նկարագիրն ընեն, Դեւ կամ Աժդահար բառերը կը գործածեն. եւ մինչեւ այսօր հաւատացուած է, թէ՝ Դեւերը լեռներ ու այ-րերը կը բնակին, անլոյս գուբերը, անջուր հորերը, եւ ան-ջրդի անապատները:

Թէ՝ անոնցմէ մէկը հազար մարդու կրնայ յաղթել:

Թէ՝ լեռներու չափ քարեր կրնան փրցնել դնել:

Թէ՝ մարդու միս կ'եփեն կ'ուտեն:

Թէ՝ թագաւորի աղջիկ կը գողնան կը տանին իրենց կին ընելու համար, եւ այդ աղջկանց տաջն չար անձնա-նուէր եւ հաստատակ կը մնան:

Թէ՝ աղջիկները մինչեւ անկարելի պայմաններ կ'առա-ջարկեն Դեւերուն. զոր օրինակ, կ'ուզեն ոսկի մուկ՝ ոսկի կատու. ոսկի աքլոր՝ ոսկի աղուէս. ոսկի նապաս-տակ եւ ոսկի որսկան, որոնք այնպէս շինուած ըլլան, որ կենդանի եղածի պէս իրարու ետեւէ վազեն, բայց չկարենան իրարու հասնիլ ու բռնել:

Խորհրդաւոր գործ աղջկան եւ Դեւի վիճակին:

Նաեւ, կամ վիշապ մը սպաննելու, կամ անմահա-կան պարտէզէն ոսկի խնձոր բերելու պայման առաջար-

կելով, և քաշի մը կամ թագաւորի մը գլուխն ուզելով, ու հեռու տեղերը դրկելով, Ասոնցմով կ'զգաղեցնեն զԴեւերը առանց տակաւին անոնց կին ըլլալու, մինչև Դեւերը կամ սպաննուին, կամ ճառուկ պառաւներու հընարքով աղջիկները խոյս տան ազատուին:

Դեւ, արմատ է նաև Դիւցազն բառին:

Ի.

ԹԷՔՄԷՆ՝ Խնուսայ մէկ մասն է, որ քանի մը գեղեր կը պարունակէ իր մէջը. և խնուսը՝ Մանազկերտին կցորդ է այն լեռներով, որոնցմէ կարմիր և սպիտակ աղի առատ և մաքուր աղբիւրներ կը հոսեն մշտաբուղխ. Եւ այսու հաւանական է ասել թէ՝ Խնուսն է Մանանաղի: Թէքմէնայ մէջ Օստապաշու չէլլիրմայ ըսուած գեղին մօտ քառասուն գերեզման կայ խաչաքարերով, զոր Քըրքլար կ'ըսեն. և ամեն մէկ գերեզմանի երկայնութիւնը քառասուն կանգուն կը չափեն: Ասոնք ալ իրենց վէպն ունին. բայց ես ձեռնհաս չեղայ հաւաքելու:

Խըրք գեղին մօտ լեռնապատ հովիտի մը մէջ ջրի մեծ ակ մը կայ, որ ուր կը բխէ տարուան երեք ամսուան մէջ միայն, Մայիսին, Յունիսին և Յուլիսին. ջուրը առատ, զուլալ, և պաղ, որ կը բաժնուի տասն և չորս առուի, և կ'երթայ ջրելու Խնուսայ դաշտի զանազան գեղերու արտերն ու մարգերը. ուրիշ ամիսներուն որ երթաս, բոլորովին ցամաք կը գտնես ակը. միայն առուները կրնան հաստատցընել քեզի՝ գեղացւոց պատմածը: Ամեն տարի Համբարձման տօնին Խնուսայ գեղերու բնակիչները՝ մանաւանդ այս ջրոյն շնորհքը վայելողները մէկմէկ գառն կ'առնեն կու գան այս ակին վրայ և մատաղ կ'ընեն, կը խնդան, կը պարեն, զԱստ-

ուած կը փոտորկեն, ու կ'երթան։ Ընդհանրապէս կը խօսին թէ՝ բուն Համբարձման օրը կ'սկսի բղխել այդ ջուրը. և ո՛ր տարին որ պատահի չբխել. կամ՝ ուշու բղխել, այն տարին Մուշու բերքը նուազ է. միով բա-նիւ՝ Մուշու Նեղոսն է այս ջուրը, և Անմոռուկի տօնը՝ Համբարձման տօն։ Ջրոյն ակն կոնքաձև աւազանի մը պէս է. այս աւազանի մէջտեղ կայ մի գերեզման իբր երկու կանգուն բարձրութեամբ և հինգ կանգուն երկայ-նութեամբ, քարով և հողով բռուած, և հողերու մէջ վարդի թփեր տնկուած. ջուրը եկած ժամանակ այդ գե-րեզմանը կը չրջապատէ լճակաձև, և չիփմը կը դառնայ կղզի մը անոր մէջ։ Այս գերեզմանը իբրև սուրբ կը կը պաշտեն Հայերը Քառասուն Մանկունք անունով, և Թիւրքերը Հայիլ բաբա։ Մէկ չէխ՛ Մուրատ անուն, կը նստի Մրրթ գիւղը, և կը համարի թէ այդ գերեզմանի մէջ թաղուածին սերունդէն է ինքն. կ'ուզէ հաստատել իր տունը ու տոհմը այդ Հայիլ բաբայի օձախով ու անունով. և ասոր համար երկու տարի կայ միայն որ տաճկական գերեզմանաքարի պէս երկու քար տնկել տուեր է գերեզմանին երկու ծայրը։ — Էհ, միթէ կարե-լի՞ է գերեզմաններն ալ կրօնափոխ ընել։

Իսկ Հայերու պատմութիւնը՝ աւանդութեամբ այս է։ Թէ՝ «Տէրտէր մը իր լոյս հաւատքին ուրացեր է, քա-ռասուն հարամի անօրէն ընկերներով չատ տարի աւա-զակութիւն է ըրեր։ Տարուան մը մէջ. աւուր մէկը, Մեծ Ջատկին, այդ ուրացողն իր ընկերներով կու գայ Էյրիս գիւղը. գիւղի երէցին պատարագ մատուցած ժա-մանակ կ'ուզէ պաշարել եկեղեցին, տաճարը թալանել, և աղջիկները ու հարսները գերի տանել։ Աւազակաց գլխաւորը՝ ուրացող քահանայն՝ հրաման կ'ընէ իր ըն-կերներուն, որ քիչ մի հեռուն կայնին, ու ինքը տաճարի

բուրգով մը կը կցուի Էնգէօլին։ Ժողովրդոց պատմած-ներէն սա կը հետեւի, թէ՝ «Բինկէօլն է եղեր Ադամայ դրախտը, ուրկէ կը բղխին գետերը Երասխն ու Եփրա-տը, և, Խնուսայ դաշտն է այն երկիրը, զոր վարեր ու ցաներ է Ադամ. Ղամնքայ բլուրն է Աբելի խաչնարա-ծութեան վայրը. և, երկրագործ Կայէնը՝ Կայէնի ծառե-րու տակն է բնակեր։ Ադամայ որդիք բնակեր են այս սարի և դաշտի վրայ։ Կայէնի շինած քաղաքը այս սարի ստորոտն է եղեր, ուր է այժմ Բաղքիկ գիւղը։ Բաղքի-կայ մօտն է այն կորաձեւ բայց անհնապարապար և վա-յելչագին փոքրիկ հովիտը, Ախըր չիմանի — յաւերժադա-լար — անունով. ուր սպանուած է եղեր Աբէլը։ Որսորդ Ղամէքը իւր բլրէն այս սարէն չրջելու իջած ատենը հանդիպեր է Կայէնին ու սպաներ»։ Բլրակ մըն ալ ցոյց կու տան, զոր Կայէնի գերեզման կ՚անուանեն։

ԻԸ.

Ադջամնլիք գիւղը մօտ է Բաղքիկու, որ Ղամնքայ բլրոյն ստորոտն է շինուած. այս գեղէն դէպ ի լեռը բարձրանալով մէկ քառորդ ժամու ճանապարհ, հեղեղա-տի մը փոս կայ բացուած։ Այս հեղեղատին բերանը՝ ասկէց իրր քանի տարի յառաջ, գեղի հովիւներ և եզ-նարածները գտան մէկ տարօրինակ մեծութեամբ գլուխ մը ոսկոր. որոյ ատամը, ծնօտները և կզակը ամբողջու-թեամբ միացեալ էին, ինչպէս մարմնով ողջ գլուխ մը կենդանի եղած ժամանակ. գեղացիները իրենց քննու-թեամբ հիմնալով այդ անհեթեթ մեծութեան և ձեւոյն, վճռեր են իրենց մէջ, թէ՝ սա Դեւի մը կամ Ադամաւորի մը գլուխ է։ Միջոցէ մը զկնի գեղացիները կ՚երթան այն փոսէն կաղձին հող հանելու՝ իրենց համար թոնիր և պուտուկ շինելու համար, քիչ մը կը փորեն և կը տես-

նեն չարք մը մեծամեծ ոսկերաց, գեղի կորիճները կը ժողովեն, յարդի սակառները կ'առնուն կուգան, և քանի մը հատ ալ չուան, կը ժողվեն ոսկորները կը բերեն գեղը. ամեն մէկը իւր բերածն իւր տունը կը տանի կը պահէ: Այն միջոցին Մշոյ Ս. Կարապետի վանքէն՝ իւղ, մատաղ, պտղի և այլ հոգևոր նուէրներ հաւաքելու համար եկող նուիրակ վարդապետը կը հանդիպի այն գեղը. գեղացիք կը պատմեն և կը ցուցնեն հայր սուրբին այդ գիւտը և իրենց ունեցած կարծիքն. ոսկորներէն մէկ կտորը կ'ընծայեն հայր սուրբին ու հայր սուրբն առանց իրմէն դիտողութիւն մը աւելցնելու, «Գուցէ ձեր ասածն ուղիղ է» կ'ասէ, և այդ ոսկորը իւր հաւաքած պտուղներուն հետ սուրբ Կարապետի վանքը կը խրկէ, որոյ մէջտեղէն բևեռ մը անցնելով վանքի բակին մեծ դրան ճակատին կը մխեն. և ամեն տեսնողք հետաքրքրաբար կը հարցնէին, միաբանները ալ իրենց գիտցածը կը պատմէին: Եղան օրեր, որ վար առնելով դրան ճակատէն այդ ոսկորը, իբրև աննշան և անպէտ բան ձգեցին աղբին անդին. և մէկ տարի ալ տեսայ որ վանքի մէջ ուխտաւորաց բազմութեան օրերը Մշեցի մրգավաճառները իբրև կշեռքի քար գործածէին երկու նուկոյ կշիռ, այսինքն մէկ օխայ, հապա կորզեցինք ձեռքերնէն, և մեր օրով յարգանօք պահել տուինք թանգարանի մէջ. մեկնած ժամանակս ալ իբրև Առաջնորդարանի թանգարանի մէկ նիւթ գրուեցաւ ցուցակին մէջ: Այս կտոր ոսկորը, վանքեցիք կ'ըսէին որ, ծունկի խուփն է, բայց աւելի նման է մէջքի ողնաշարի ոսկորներէն մէկին: 1873 յունուար ամսուն Աղջամէլիք գեղը հանդիպեցայ, բաւական հետաքրքիր եղայ գեղացիներէն, որոց պատմութիւնն է այս: Թէ՝ «Այդ մեծ գլուխը և շատ մը ոսկորները գեղը բերելէն ետք, ձայն տարածուեցաւ:

*Թէ՝ Էրզրումէն ղրկեցին ուզեցին մէկ քանի կտոր ոսկոր ու բերնի ակռաներէն։ Թէ՝ ամէն մէկ ակռան մեզ պէս մարդու ձեռաց բոլթ մատէն մեծ էին։ Թէ՝ ամէն մէկ ակռան վեց ճիւղ ունէր։ Թէ անոր մէկ ոտքի սրունքի ոսկորը Երեւանխանի տանը մէկ գոմշու մարակալ շինեցին։ Թէ՝ մէկալ սրունքի ոսկորն ալ տիրացու Մխէնց դրան կչտանոց ըրին։ Թէ՝ միջոց մը անցնելէն ետքը, Էրզրումայ փաշայէն զավազնիր, Խնուսայ միւտիր և երկու ալ Ինգլիզ եկան, գեղացիները տարին այդ գօռը փորել տուին, երկայնութիւնը յարեւելս էր թաղուած, ոսկերտանք՝ ամէնքն ալ հանին։ Ու մէկ հաստ ու երկար Ինգլիզ կար, չափ ու կշեռք ունէր ձեռք, կը չափէր ու կը գրէր թղթին վրայ։ Թէ՝ այդ փոսին բերան ուրիշ շատ տեղեր էլ փորեցին, բան չգտան. մինակ իրենց ձեռք ինկած ոսկորները, քիչ մըն ալ գեղացիներու հանածէն, ու գլուխը, առին տարին։ Եւ թէ՝ մեր ձեռք մնացած ոսկորներէն, որ մանր կտորներ էին, հարերու մէջ թաղեր ենք», եւայլն։*

*Սաստիկ և թանձր ձիւն կար գեղը. և ես շտապաւ պիտի անցնէի. գեղացիները միայն իրենց հողային յափշտակութեանց՝ Բլեցի Քիւրտ Շահօյի հարստահարութեանց վրայ կը խօսէին, և անոնց դարմանը կը հարցընէին։ Չկրցայ ժամանակ ունենալ աւելի մանրամասն տեղեկութիւններ առնելու և տեսնելու, միայն խնդրեցի և մէկ կտոր այն ոսկորներէն տուին ինծ, զոր ըսին թէ՝ կողի ոսկորին կտորն է,* ղաբուռղայ։

*Ուզեցի իմանալ թէ արդեօք չորքոտանու՞յ ձեւ ունէր թէ մարդու, ակռաներէն և ձեռքի ու ոտքի ոսկորներու դիրքէն մակաբերելով, — չկրցան գո՞հ ընել հետաքրքրութիւնս։ Եւ թէ ո՞վ և ի՞նչ անուն էր այդ Եւրոպացւոց չկրցան պատմել վերոգրեալէն աւելի։*

Հայաստանի կողմերը այդպիսի գիտնական Եւրոպացիները ի՛նչ ազգէ կը լինին թո՛ղ լինին, առհասարակ Ֆրանսըզ ու Ինգլիզ կը կոչուին:

Ո՞ր դարերէն մնացեալ կմախք է այս: Հսկայ մարդու մը լինի թէ Վիթխարի կենդանւոյ մը, որոնց սերունդը չեն տեսնուիր այժմ:

Ո՛վ հողեր, արդեօք ձեր խաւերու և անդունդներուն տակ ի՛նչ յաւիտենական գիտութիւններ ու ծանօթութիւններ կը պահէք մարդոց. կենդանեաց և ամեն կարգի արարածոց վրայ, որոց հետքը մշուշաւոր կը նշմարուի տակաւին երկրի ժողովրդոց բերնէ բերան հասած վէպերուն և աւանդութեանց մէջ:

Կը յիշեմ հոս նաև, որ երբ 14 տարի յառաջ Վանայ Վարագայ սարի ստորոտները Կարմրաւորայ վանքի առջևը գտնուեցաւ մէկ անհեթեթ մեծութեամբ գլուխ մը՝ վանահայր ծեր Բարդողիմէոս Վ.ի ձեռքով, այն տեղը, ուր այգի փորեց ու տնկեց, և այդ գլուխը նոր շինած ջաղացքին մօտը անյայտ թաղեց: Եթէ քրքրուէին հոն և շատ մը տեղեր յայտնի երևցած ղերրուէները, ինչե՞ր պիտի դուրս գային գիտութեան ի պէտս:

ԻԴ.

ԲԻՆԳԷՕԼ՝ այն բարձր և անվաման լեռն է, որ մեծ և փոքր Հայաստանի կեդրոնը կամ սրտի վրան բռնած է, և որ ամեն հիներէն և նորերէն կը համարուի Ադամայ Եդեմ դրախտը: Ինքն անկցորդ է Տօրոսի լեռներու գօտւոյն, և Ծաղկեայ լերանց շղթային: Ասոր գագաթները կը վայելէ անապատ օդ, շատ ջինջ կ՝երևայ իրեն երկնից եթէրը, քիչ մը 'ի խոնարհ առնելով իւր աչքերը, շուրջանակի կը տեսնէ Հայաստանի ա-

մեն կողմերը, կ՚ողջունէ Մասիսները և Արագած հանդերձ համայն հիւսիսակողմօք և արևելեան կողմամբ. Արմանի և Դէնայ աւերակաց փոշիները կը նշմարէ երբեմն արևուն շողին շամանդաղը, որք կու գան հաստատելու այս լերան անթիւ ծաղկանց կոհակներն ու թերթերը :

Այս տեղ Անիին գմբէթներուն ու բերդերու բեկորներուն վրայ վայող բուերու արձագանգն ու սոյլը կը բերէ գարնան սիւքը, և կը խառնէ Բինգէօլի բլբուլներուն և հովուաց սրինգներու ձայները անուշցընելու. Վասպուրականի ծովը, Տիգրանակերտն իր Միջագետով Ծոփք, Բալա հովիտ, Երզա՝ Դերջանով, Կարինը կըլլին Բասենով՝ Բինգէօլէն կ՚երևին սրտահոյ. և ասոնք Բինգէօլէն ջուր կ՚ընդունին :

Արդէն Վարդօ, Խնուս, Շուշար, Փօյնուզ, Քղի, Ճապաղջուր, Կարնոյ հովիտ, ասոնք բոլոր Բինգէօլի ածուներն են. և բնակիչքը անկէց իրենց հացն ու ջուրը կ՚ընդունին :

Տեսէ՛ք եւ Հայոց-հին քաղաքներուն մէջ հոյլոր Յակոբ Նահապետի պատկերը, որ ընկողմնած կը քնանայ, և իր սրտէն մէկ ծառ կը բարձրանայ բազմատեսակ. և ոստերուն վրայի պտուղներն են Իսրայէլի նահապետք և թագաւորք: Տօ՛ւր Հայաստանին ալ մի այդպիսի պատկան պատկեր, որ ընկողմնած լինի իր պառկելին վրայ, անոր գանկն արա՛ Մասիսը, և աղեղնաձև պաշտն Արարատայ՝ անոր յօնքեր: Պինչերը կամ ռնգունք՝ ծով Կապուտան և ծով Գեղամայ, իսկ աչերը գառն ու այլ լճեր Որմեայ և Ալթամարայ. Իր մէկ թեւը տարածէ հիւսիսէն Կասպից ծովի ափերով, և ձեռքի մատները ցից պահելով՝ կը ձեւանայ Կովկասը. հարաւէն Վասպուրականի սահմանագլխով պարզէ իր միւս թեւը մինչ ի Ծոցն Պարսից, և թաթիկն բաց արած լինի՝ Միջագետք

և գոյնան թէլերով։ Իւր ատները ձիգ երկարցուցած հասնի մինչ ի Կապադովկիա և Կիլիկիա, և այն ժամանակ Բինգէօլը այդ պառկածին ճիշդ պորտն եղած կը լինի։ Միւս լեռները դիւրին է յարմարցնել կողերուն, որոնք տափարակին, թոքին պոլօճկներուն, ոտնաչարքին։ Գետերն արեան երակ, և անտառ ու մացառ՝ անոր մորթի մազերը, եայլն։ Բայց ի քուն և ընկողմնած լինի նա, ոչ արթուն և ոչ ոտքի վրայ, ոչ աշխատի, ոչ ուտէ, ոչ իւր տեղէն ու դիրքէն երերայ։ Ճնջէ միայն, և թոքերը տրոփեն, սիրտը բաբախէ, բազկերակը զարնէ պորտը բայց ու խուր անէ։ Բինգէօլը զմնդակ տարտարոս մ'է ձմեռուան եղանակին, և դրախտ բացեալ ի գարնան և ամրան։ Բինգէօլը վէհ և ահաւոր չէ, այլ սիրուն. թագաւորի չի նմանիր, այլ թագուհւոյ. քնքուշ է և փափուկ. կոյս մ'է պճնազարդ և փափկասուն. չորրոց լեռն է քան թէ քաջաց և դիւցազնից. ասոր համար իւր վրայ եղած մէջերը ոչ Ագնաւուրի, ոչ Դեւի, ոչ յաղթողի և ոչ զինուորի ու թագաւորի են. այլ սիրոյ զուարճութեան, առողջութեան, գեղոյ և զարդու, անուշութեան, պարարտութեան, զուարթութեան։ Որովհետեւ ասոր բլուրներուն և հազար ակնից բոլորը բիւր տեսակ բուսոց և ծաղկանց փառած են։ Զրարբի մարգեր, ամենադալար խանձարներ և խոտեր իրենց արմատներով. ուտելու, բուժելու, գոյն գոյն ներկելու կը գործածեն. իւր վայրի կենդանիները՝ առիւծ և վագր չեն, այլ եղնիկ և այծեամն։

Հոն նախրի կովերը, մատակ ձիերը, խաշանց մաքիները հոտով կ'արածուն. հորթ, քուռակ և գառներ կը ծնանին։ Հաւերը իրենց ձագերը ծաղկանց բոյներու մէջ ածելով թուխս կը նստին, և ձագերով կը թռչին։

Հոն գրաստները կուգան ուրախանալու, հիւանդ-

ները օդ և ջուրը ծծելով կեանքը նորոգելու, կոյսեր և հարսները ձեռագործի թելերը ներկելու համար ծաղիկ և արմատ ժողովելու, մրաջան տանտիկիններու բանջար ժողվելու, բժիշկները՝ դեղ ու դարմանի համար ամէն բոյսէն ծիլ մը կամ ծաղիկ մը կամ թուփ մը առնելու իսկ մեղուներու աղջոցն ու բզզոցը հիանալի ներդաշնակ մը կուտան մարդկանց և թռչնոց երգերուն անասնոց բառաչին, գորտերու կառաչին, գլգլացող առուակին ու սուլացող սիւքի ձայնին: Անթիւ անհամար մեղուներ: Բայց մի և նոյն ժամանակ օձերն ալ կը սողոսկին այդ ծաղկանց կողակի քովերէն, իրենք ալ կ'առնեն միեւնոյն ծաղիկներէն հիւթը, և կը փայլեն սուրբ օդը: Հոս մեղուներով մեղր կը շինուի, և օձերով թոյն:

Տաճկերէն լեզուով գոլասանք տէստէն խաղ մը կայ Բինգէօլի վրայ, զոր շատ գաւառներու բնակիչներ գիտեն և սրտագին ու մխմխուն եղանակաւ մը կ'երգեն, որոյ սկիզբն է «Ազալ բահար աչըլտի», և նագարաթն է «Ախար կիտէր Բինգէօլի»: Սքանչելի նկարագիր և գիտանական ոճ մը ունի այս խաղը, որով լերան բարեվայելչութիւնը կը գովէ երգիչը, և արարածները կը հրաւիրէ հոն Աստուծոյ սքանչելիքը տեսնել վայելել, կեանք առնուլ. և թէ ինչպէս անմահական ջուրեր կը բաշխէ երկրին, ևայլն:

Շատ ցաւ է ինձ, որ ինչպէս շատ ուրիշներու, նոյնպէս և Բինգէօլի բազմամասն վէպերը ամբողջ չեմ կրցեր ձեռք բերել: Մէկը միայն պատմեմ հոս:

Մի Քիւրդ հովիւ Բինգէօլի լեռը գառներ կ'արածայ եղեր. օր մը կը տեսնէ որ մէկ վիրաւորուած, մէկ ջախջախուած, և մէկ ալ քոռացած երեք օձեր կուգան ջրերու ակունքներէն մէկին ափը, ծաղիկէ մը մէկ մէկ թերթ կը փրցնեն կ'ուտեն. և մտնելով այն ջուրին մէջ կը

լողանան, բաւական միջոց մնալով ի ջուր: Հովիւը՝ որ անթարթ աչօք կը նայէր անոնց, յանկարծ կը տեսնայ որ երեքը մէկէն առողջ, առոյգ եւ՝ աշխոյժ սողալով դուրս կ'ելլեն ջրէն՝ ապաքինած, եւ արագ արագ կը սահին կ'անցնին հովուին աչքէն անհետ: Այս հովուի տէրը երեւելի հարուստ մի Թիւրք է եղեր, երկար ժամանակէ հետէ քաշուած ախտացած. կը վազէ հովիւը եւ իւր տեառը պատմելով, կը վերցնեն տէրը կը բերեն այն տեղ, բայց անհնարին կը լինի հովուին ճանաչել թէ ո՞րն էր այն ծաղիկն եւ այն ակն: Եւ որովհետեւ մէկ չէ, հազար չէ աղբիւրն ու ծաղիկն այն տեղին, որ փորձի համար ուտէր եւ խմէր, ու միանգամայն թունաւոր լինելէ ալ կասկած ունելով, խեղճ քոսոտ Թիւրքը կը նեղանայ հովուին թէ՝ ինչո՞ւ չէ կրցեր նշանել, միտ պահել ծաղիկն ու ակն: Հովիւը կը պատասխանէ. «Բինիգէօլ, հէզար գէօլ. ազ չի՞ զանըմ ֆիժան գէօլ». — Բիւր ակն, հազար ակն, ես ինչ գիտեմ որ այն ակն —: Եւ այս է եղեր իբր թէ անեղուոյն անուանակոչութեան սկիզբը, ըստ պատմելոյ անոնց: Բայց այդ լեռն իր հին անունը ունի, եւ իւր հնագոյն վէպերը: Այս վէպերու մէջն ալ եթէ դերասանները Թիւրք կը ներկայանան, ինչպէս շատ Քրդերէն ու Տաճկերէն լեզուաւ ասացուածքներ, թէ երգ եւ թէ զրուցատրութիւն եւ թէ բաներ ու բառերու յարմարական ստուգաբանութիւնք կան, որոնց հեղինակ Հայ եղած են անշուշտ. բայց երբ շատ անգամ Հայերը գաղթեր ու փախչեր են, կամ կրօնափոխ եղեր են, անոնց տեղը գրաւող Քրդերը, իրենց բածը իրենց լեզուով սկսեր են պահել ու պատմել. կամ կրօնքն ու լեզուն փոխող Հայերը այս վէպերն ալ իրենց լեզուին հետ փոխած են: Որչափ խաղեր կան Քրդերէն ու Տաճկերէն լեզուով, բայց ըստ որում անոնց նիւթը՝ Հայոց տեղեր, Հայոց դէպքեր, եւ

անձինք կը ներկայացնեն, անոնց յօրինողները Հայ եղած են. սակայն օտար լեզուով յօրինած, ինչպէս որ մինչեւ ցայսօր ալ յօրինողներ կան. Նոյն իսկ Քրդերու և Տաճկաց կեանքին վերաբերեալ խաղերէն ալ շատը կը յօրինեն Հայեր: Ընդհանրապէս քիչ են Քրդերէ ու Տաճիկներէ աշուղները Հայաստանի մէջ. այդ երկիր և այդ կլիման Հայուն է թողուցեր այդ միակ ձիրքը, որ անկողոպտելի է մնացեր. այդ երկիրը կ՚ըսեմ, որ Քիւրդիստան չէ, ինչպէս անգթութեամբ և անգիտութեամբ կ՚անուանեն ոմանք, այլ տակաւին մինչեւ այսօր և մինչեւ յաւիտեան Հայաստան է ու Հայաստան պիտի մնայ:

**ԻԴ.**

Բինգէօլէն վար եղած՝ Արօս և Արաքս գետերէն անցնելով կը մտնանք այն ձորը, որ Դղձու ձոր կ՚ըսուի, և գետ մը կանցնի ձորամիջով. գետատափի ճանապարհ մը կայ հոն, եկելով անկէց կը բարձրանայ ուղեւորը լեռան այն գօտիին վրայ, որոյ ստորոտն է Վարդուայ հովիտը: Տեղագրութիւն չպիտի ընեմ ես. այս ձորերու, Ջրերու, գետերու վայելչութիւնը չպիտի գրեմ: Վարդօն շրջապատող գեղեցիկ լեռնագօտիէն, որ Բինգէօլի մասերն են, կամ նոյն իսկ Բինգէօլը, կը սնանուի այդ լեռներու քարեայ մասերուն մէջ բազմաթիւ քարայրեր: Անոնցմէ որը՝ ուղղակայ վայր է. որը՝ վայրի կենդանեաց և աղուեսուց որջ են և թռչնոց բոյն. որը՝ գեղի ոչխարաց երբեմն գոմ կը ծառայեցնեն, գոմ՝ քանի մը հազար ոչխարաց բաւական. որը՝ ճգնաւորի տեղ կը կը կարծեն: Իսկ մէկ քանիները մեղուներուն փեթակ են, որոց մէջ յաւիտենից չինուած կուտուած մեղրերը մերթ ընդ մերթ զեղլով, ծակերէն դուրս ծորած են, և

տեղ տեղ ալ այրերուն զանելը ժամանակի ծանր ձեռքով անկայտացած և ընդ հողով ծածկուած ըլլալով, զայն կամ հեղեղ մը, կամ վայրի խողի կնճիթ մը, որ մինչև հող կը փորէ, կամ կուսան զոմէշի մը կոտոշները՝ որ զարմանան նոր արև հանուած ժամանակ կը փնչփնչայ, և ճակատը ու կոտոշները ուժգին զարնելով՝ ծառերու արմատին, քարին կամ հողին կը զարնէ, ուժով կը քրքրէ այս տախտակներով կը գտնուին: Այդ այրերը ինձ շատ հնագոյն կը թուին, կամ այն ժամանակուան մարդոցմէ շինուած, որոց մէջ տուն շինելու ճաշակն ու ճարտարութիւնը չէր տարածուած և ընդհանրացած, և միայն հողը փորելով և այսպէս քարայրներ գտնելով կամ շինելով մէջը բնակած են, կամ ամեհի ու ամեհի գազաններէն պաշտպանուելու համար ըրած են, կամ ինչպէս մեր պատմութիւնները ցոյց կու տան՝ բարբարոս ազգաց արշաւանաց ու աւարառութեանց օրերու մէջ, մարդիկ իրենց գոյքը և ստացուածքը՝ շատ անգամ ալ կանայք ու մանկտիք ապաստան դրած են հոն, ու իրենք դիմեր են 'ի ճակատամարտ:

Այս վերջին ակնարկս շատ տեղեր յայտնի կը գրեն պատմիչները, ինչպէս Փարպեցին, Վարդանանց պատերազմէն ետքը, կ՚ըսէ, Մնացեալքն փախեան 'ի ծերպս և 'ի խորշս լերանց Խաղտեաց յապաստան անմատչելի: Թաթարաց արշաւանաց ժամանակ՝ նոյնպէս կը յիշուի մեր պատմիչներէն, և այլ ուրիշ տեղեր ու ժամանակները: Բարայրները միայն Վարդօ չեն, այլ գրեթէ Հայաստանի ամեն գաւառներու մէջ կը գտուին են: Այրեր, որոնք ո՛վ գիտէ ո՛ր դարու յիշատակները և կեանքի ու դէպքերու պատմութեան ինչ թանգ ու հետաքրքրական գանձեր ունին թաղուցած իրենց մէջ, որք կը մնան անհետազօտելի: Այս տեսակ այրերէն շատը բնական

եղած կը թուին. չամեր ալ կան, որոց մէջ կաղնիներու հետքը կը նշմարուի:

## ԻԵ.

Տարօնոյ դաշտի բերանը, Աշտիշատայ մօտ՝ կայ մի գեղ, զոր այսօր Բազչայ կը կոչեն տեղացիք. բայց Տարօնոյ պատմիչ Յովհաննէս եպիսկոպոսը Վիշապն անուն կու տայ այն տեղին, և քաղաք կը կոչէ. ինչպէս նաև Գայլ Վահանի ժամանակ Օձ քաղաք կը պատմէ Տարօնոյ դաշտի արեւելեան հարաւի կողմը, ուր չամբեր կան Մեղրագետի ական քով: Օձ քաղաքի հետքերը, աւերակները, ինչպէս նաև անունն ալ՝ կան ցայսօր. և քանի մը տուն ալ բնակիչ ունի մէջը իբր գեղացի, Մուշեղչէն անունով գեղին մօտ: Օձ և Վիշապը երբեմն Հայկազն Երուանդեան Տիգրանի ժամանակ Հայկական դրօշակի նշանն էր, Աժդահակը սպաննելուն յիշատակ: Բայց ինչպէս առիթ ունեցանք Դարօնոյ օձերու թագաւորութիւնը յիշելու, հոս միտքս կու գայ թէ՝ միևնոյն կերպով վէպեր կան նաև Հայաստանի ուրիշ գաւառաց մէջ ալ. և երբ զօրաւոր ու հուժկու մարդու նմանութիւն տալ ուզեն, օձու և վիշապի կը նմանցընեն: Օձը հմայութեանց արհեստին մէջ ալ գործածուած է միշտ: Մինչև ցայսօր ալ օձու շապիկ. կը դնեն իրենց ծոցերը կամ գլխարկին մէջ, որպէս զի օձերը չխայթեն զիրենք: Կայ և մի սովորութիւն ալ, որ օձոց, կարիճի և այլ այսպիսեաց ձեւը մանր ուլունքներով կը շարեն և կը կարեն երախայից գտակին կամ հագած հագուստին վրայ ի հարկէ օձն ու կարիճը իբրև զարդ չեն գործածեր, այլ ուրիշ խորհուրդ մը ունին: Վիշապը թերևս իւր անուանութեամբ՝ 'ի հնումն պաշտուած ալ լինի 'ի Հայոց: Արդէն սովորաբար մարդիկ Աստուծոյ տեղ կը դնէին

մէկ մը զայն՝ որ հաճոյք և բարիք կը սփռէր, մէկ մ՚ալ զայն՝ ուսկէ երկիւղ և պատուհաս կը կրէին. վերջինքն են օձն և վիշապ: Օձերու և վիշապներու վրայ ընդհանրապէս Հայ ժողովրդական վէպերուն մէջ կարծիք կայ թէ՝ անմահ են անոնք, եթէ չսպաննուին մարդերէ. և այս կարծեաց համաձայնելու համար կը խօսին թէ՝ օձը իւր շապիկը փոխելով կը նորոգուի. և թէ՝ աղբիւր և ծաղիկ մը կայ, զոր կը ճանչնան օձերը, որ օձերուն անմահութիւն կուտայ: Վանայ պառաւներուն մէկ մէկը կայ թէ՝ Վիշապը երբ հազար տարեկան լինի, շատ տարտափելի կը մեծնայ. հրեշտակները երկինքէն կ՚իջնեն, շղթայով կը կապեն, ու կը քաշեն վեր, այնքան կը բարձրացնեն մինչեւ արեւուն մօտ հանելով, ուր կիզիչ հուրը կը վառէ ու մոխիր կը դարձնէ զայն: Կը յաւելուն, թէ մեծ շառաչունի ձայներ կը լսեն երկինքը քաշած ժամանակ: Թէ՝ երբեմն այնքան կը գալարի որ պոչը կը փրթի վար կ՚իյնայ: Եւ որովհետև ինչպէս օձին ջրային ու ցամաքայինը կայ, նոյնպէս ալ վիշապին. ուստի կ՚ըսեն թէ, տեսնուած է երբեմն Վանայ ծովուն մէջէն, երբեմն ալ ամպի լեռներէն վիշապներուն երկինք քաշուիլը: Գուցէ թամթար հողմի նկարագիրն է սա, որ ծովէն ջուր և ցամաքէն փոշի, ծառ և քար կը բարձրացնէ յամպս և ի վայր կը թափէ:

Կ՚ըսեն նաև, թէ՝ այդ վիշապը փարսեր և թեւեր ունի: Թէ՝ երբեմն սաստիկ ջուր կը փչէ երկրի վրայ: Թէ՝ վառուելէն ետք մոխիրը վար կը թափի կը տեսնուի: Թէ՝ երբեմն ալ երկնքի բարձրութենէն կը թողուն հրեշտակները, որ իյնայ վիշապը սարի մը վրայ, և ամենամանր փշրուի. թէ եթէ երկինք չքաշեն, երկիրը աւերի կու տայ: Թէ՝ Վանայ ծովու մէջ կայ Վիշապի բոյնը, այն տեղը անհագին Վիշապ մը կայ, որ բոլոր ծովու յա-

տակը բռներ է, ու հրեշտակները միշտ կը զարնեն կը վիրաւորեն անոր պոչը, որ չմեծնայ եւ ծովն ու ցամաքը կլլէ, եւայլն։ Կարծես Յոբայ պատմած Լեւիաթանի նմանութիւնը կուտան այս Վիշապին։ Ընդհանրապէս քարայրներու համար կը սեպեն թէ Վիշապի բոյն է, եւ թէ հազարաւոր օձեր կը լինին այն տեղերը։

ԻԶ.

Զիղեռն կամ Ծիծեռն աւան մի է յիշատակուած Տարօնոյ պատմութեան մէջ. մինչեւ ցայսօր ալ Զիզեռն կ՚անուանեն այն աւերակին, որ Ս. Կարապետի վանքի ստորոտը Մշոյ դաշտի ծայրը Չխարաթ գեղին եւ Խարարէզ գեղին մէջտեղը կ՚իյնայ։ Չխարաթու բնակիչները կը պատմեն թէ գիշերները սանդի քար մը կ՚երեւայ Ծիծեռնի աւերակին մէջ, եւ շատերս տեսեր ենք երբ ամառ գիշերները այն տեղերը լուսնակի լուսուն խոտ կը քաղեմք, բայց ցերեկները չտեսնուիր. քանի մը անգամ գնացեր ենք սայլ բերելու, որ բառնանք այդ սանդը տանինք գեղը, անտես եղեր է. եւ իբր թէ՝ աւանդութիւն կայ եղեր, թէ՝ այդ տեղը գանձ կայ թաղուած, բայց անոր թիլըսմը գիտնալու է, որ հանուի։ Այս կարծիքը ամեն գաւառի բնակիչներն ունին. ուր որ բլրակ մը, կամ աւերածակոյտ մը տեսնեն, անոր վրայ կ՚սկսին պատմութիւն ընել թէ գանձ կայ, բայց թիլըսմը գիտնալու է, ռամ ձգելու է, որ գտնուի։ Ասանք ու թիլսումը մէկզի թողլով, որ խարէութեան խօսք եւ հնարք մի է, բայց, գանձ կայ ըսելէն, այս ընդհանուր կարծիքէն, կարելի է հետեւցնել, թէ՝ նախնիք իրենց ոսկին ու արծաթը, դրամն ու ակունք, զարդեր եւ թանգ նիւթերը նշանով տեղ մը կամ իրենց տանց հիմերու տակը, կամ գերեզմանները կը թաղէին, ինչպէս պատմագրու-

թեանց մէջ ալ ըսածիս վկայութիւնը կը տեսնուի շատ տեղ. զոր օրինակ, Վասակայ համար կ'ըսէ Սուրբ Եղիշէ. Երբ Յազկերտի բանտը ձգուած էր և անոր ամէն զարդն ու հարստութիւնը կողոպտեցին, կ'ստիպէին որ եթէ նախնեաց գերեզմանները թաղուած գանձ մնացեր է, հանել բերել տայ: Ընդհանրապէս ալ այս կարծիքն էր Պարսից, երբ Երիզու Անի ամրոցէն, Թիլէն և Թորդանէն Արշակունի թագաւորաց գերեզմանները կը կրկտէին, ու ոսկորները կը հանէին. ցայսօր ալ նշանաւոր չիրիմ մը և դամբան մը ուր որ գտնեն Հայերը, կը կարծեն թէ գանձ կայ անոր մէջ կամ անոր կից: Այս սովորութեան առիթ տուած է կա՛մ բարբարոսաց ու յափշտակողաց երկիւղը կա՛մ ագահութիւնը: Ես գիտեմ որ 1872ին Վանայ պարսպէն դուրս հին գերեզմանոցի մը մէջէն տղաքները գետնափոր խաղալով պուտուկ մը լեցուն արծաթէ դը-րամ գտան. Մշոյ Փողրկով գեղի առջև մեծ առուի մը շուրթն պարափուլ մը կար, ուր հորթարածները բըխկով ոսկի գտած էին. և Կնձայ լեռներուն ամրոցներու աւե-րակներէն հին ոսկիներ գտած էին Քրդերը, որոցմէ քա-նի մը հատ գնած էր Ջիարաթ գեղի ոսկերիչ Ոսկէն:

1869 թուին Գլակայ վանքի միաբան իննսունամեայ Մեսրոպ վարդապետը վախճանեցաւ, որ հողէ բլիկ մը լցուն արծաթ մէճիտիյէ և ռուսի արծաթ մանէթները անչէն սենեկի մը մէջ ընդ հողով թաղած էր: Կայ մարդ՝ որ իւր տանը պատին մէջ կը դնէ իւր գանձը և քարով աղիւսով կը շարէ. կայ՝ որ սենեկի կամ բակի յատակի աղիւսին կամ սալի մը ներքև կը փորէ կը խորէ. ևայլն:

ԻԷ.

Եթէ Տարօնոյ շուրջը գտնուած Կինձայ և Ծապաղ-ջուրայ լեռներուն ու ձորերուն մէջ եղած զանազան ա-

նուն և մէկ ունեցող գետերը, տեղերը, ջրերը ու քարայրները մեր տեսութեան ու գրութեան ենթարկենք, ասոնք ամենն ալ երկարապատում գրոցներու նիւթ ունին. որք արժանի են յատուկ մանրամասն նկարագրութեան և վիպագրութեան: Թէ՝ ինչպէս Եփրատը երբ Մշոյ դաշտը կը մտնէ, կնձան սարերու մէջ գալարուելով քարերուն՝ նեղ կիրճով մը սղմուելով գո՛ւռ գո՛ւռ ձայն մը կ'արձակէ. և այդ տեղը կը կոչուի Գուռ գուռայ, ուր Սասղինի լոգարանն է եղեր: Եւ քանզի գիշերները լուացուելու սովորութիւն ունէր Սասղինը, Դողօնաց սարին վրայ մեծ կրակ կը վառէին տարփաւոր կորիճները, որոյ լուսով կը դիտէին Սասղինի չքնաղ գեղեցկութիւնը, հնարած է Սասղինը որ մշուշ պատէ այն ամբողջ միջավայրը, այսինքն Մշոյ դաշտն ծագաց 'ի ծագս. թէ ամառն թէ ձմեռն, մինչ 'ի ծունկս սարերուն. որով անհնարին կը լինի որ և իցէ կողմի լեռներէն տեսնուիլ. և գուցէ այս չարունակ և թանձր մշուշէն այդ երկիրը կոչուած լինի նաև Մուշ: Արդէն բնակիչք այս երկրոյ յանկ երգը կ'երգեն

«Մշոյ սարեր մշուշ է,
Իւր հողն ու ջուրն անոյշ է»:

## ԻԲ.

Եփրատի հետ նորա երթալով, կիրճի կապաններով և ջրափի մացառներու և ձորամայրի միջով կը հասնիս նեղ ու պատիկ երկնքի մը տակ 'ի լեռնամէջ. հոն կ'երեւի բերդ մը կլորաձեւ, մէկ կողմէն ցամաքին կից իբրեւ հրուանդան, և երեք կողմով Եփրատի լճացած ջրերով շրջապատ. ջրէն պատուած երեք բաժինն ալ լերկ և սահուն ապառաժ են, իսկ գագաթը տափարակ, ինչպէս գլուխէն դանակով կտրած խնձոր մը. Եփրատին ջուրը

ճիւղ օձոյն՝ կամ օձամանեակի ձեւով կը փաթթուի այդ բերդին, ու կանգնի կ'երթայ իւր երկայն ուղին. այս բերդն է Անառիկն եւ անմատչելի Ողկան մինչ Նշանաւոր Տրդատէն յառաջ. Տրդատին ժամանակ, և Մամիկոնեանց օրերուն. որ իւր հետն ունի դարաւոր պատմութեանց յիշատակները:

Գուրգուռին մէկ քովն է Սեղանասար, որոյ գագաթը ուղիղ տափարակ է ճիշդ սեղանաձեւ. իսկ Գուրգուռին միւս ափն է Սեւ սարն կամ Սիմն, այն է Տօրոսը. որ Մշոյ սար ալ կ'ըսուի. զանազան գլուխներու բաժանուած, բայց իբրեւ մէկ տան մէջ մէկ գերդաստանի անդամք՝ իրարու մօտ ծունկ ծնկի, դէմ դէմի պուպուզած, ձորերով, վտակներով, գեղերով լի: Անդոկ լեռան այս լերանց մեծ եղբայրն է ամենէն բարձր. Մարութան կամ Մարաթու լեռան՝ անոր մէջ սուրբ և բարեպաշտն է, որ Մարութա ճգնաւորին և եպիսկոպոսին անունով յորջորջուած կը թուի. այն՝ որ սուրբ Շմաւոն եպիսկոպոսի և արեւելեան վկայից նշխարները ի Պարսից բերաւ և բիւրաւոր մասունքներ ժողովեց ու Մարտիրոսաց քաղաք Նփրկերտը շինեց. որ հեռի չէ այս լեռնէն: Սասունք կամ Սասնոյ լեռան՝ որ եղբարց մէջ ամենէն փոքրն է և անպարտելին՝ երկաթէ կողերովն ու քարոտ գլխովն. և որ ապաւինական եղած է Ասորւոց Սենեքերիմ արքայի որդւոց Ադրամելէքին և Սանասարին, Քրիստոսէն հազարաւոր տարի յառաջ:

Ծովասար լեռան՝ անոնց գեղեցիկ քոյրն է, որ Առաքելոց վանքին մօտ է, և պտտիկ ծով մը ունենալով իւր գագաթը այս անունով կոչուած է. այս ծովակին չուրջ բուսած պարկեշտ մանիշակները երկնագոյն մարգեր կը ցուցնեն. և անթիւ են տեսակ ու գոյն զանազան ծաղկանց, որ կ'զմայլեցնեն արարածները իրենց անուշով

ու գոյնով։ Իսկ խաւարծիլին անանուն ու յոյժ պատուական է այս տարին։

Այծը, թէպէտ անոնց մէկ կարն է, բայց խորթ է. զառ ու փոս և քարուտ գիւղ մը ունի, կարծր և ծուռ ու մուռ փայտերով ապարթալի. որոյ բնակիչներն ալ նոյնպէս կոշտ, ապր և անմիտ մարդիկ են մինչև ցայսօր։ Այծէն կ'իջնաս Սալնոյ ձոր, ուր Բաղէշն է։ Եւ Ազնուաձոր, որ Գիւզելտէրէ կը կոչուի։ Կ'երթաս Կարճկան, Վանայ ծովակը, և Սորփ գետէն անցնելով մի երկար և ձիու կողի ձեւ ունեցող կապոյտ գունով լեռ մը կը տեսնես, այն է Կապուտկող։ Անկէց Ռշտունիք, Արտօս լեռը, Ոստան, Հայոց ձոր, Վան կամ Տոսպ գաւառը։

ԽԹ.

Ընթերցողին յայտնի է թէ որչափ շատոնց կը թափի գրիչս, ասոնց ուշադրութիւն ընելու փութացած և չը յիշած լերանց, գաւառներու, բլրոց և անոնց վայրաց նկարագիրն ու մէկերն ներկայացնելու։ Ես նպատակ ունիմ յառաջ վարելու։ Եւ որովհետև այս իմ գրական գործս կրկին յուշարար և ծրագիր կ'ուզեմ ներկայացնել, բաւական է, աւելին չեմ ուզեր երկարել։ Որքան ձեռնհաս եղեր ու հաւաքեր եմ, և որքան եւս պատեհութիւն ունենամ հաւաքելու, զանոնք ալ զատ գործ կ'ընեմ, կամ այլոց քան զիս հմտագունից և աշխատասիրաց կ'առաջարկեմ։

Եւ չյիշեցի այն կողմերը գտնուած հանքային ջրերը, որոց մէջ նշանաւորն է ի Վարդօ Լայուզարայ ջերմուկները։

Ես չյիշեցի Ճապաղջուրի մէջ եղած գրիսխի և զանքի հանքեր, և այն երկրի առողջութիւնը, և աւանդական խոտերը։

Ես չյիշեցի Կինճ լեռանց և անոր բերդերուն ու ձո-րերուն անունները, անոնց բնակչաց նախկին և արդի անկախ՝ բայց վայրենական ապրուստը. ուր Քրդերու բազմաթիւ ամիրաները կը բնակին:

Ես չյիշեցի Սասնոյ և Խութայ հին ու նախկայն բնա-կիչները. և թէ անոնց ծոցերու մէջ ի՛նչ գեղեր, ի՛նչ կարիճներ կը գտնուին Հայոց և Քրդաց, որոց կանայքն անգամ զինեալ են. և իրենց զէնքն ու վառօդն իրենք կը շինեն: Թէ՝ ի՛նչ սքանչելի բան կը լինէր այս ամե-նուն կենցաղավարութեանը նկարագրին հետ, և իրենց զգեստուց ձևուն ու կեանքի զբաղմունքը ստորագրուէր, կամ անոնց պատկերները լուսանկարով հանուէր: Թէ՝ Մշոյ լեռանց շղթային վրայ քանի՛ քանի՛ բերդեր կային անոնցմէ քանիսը Մուշեղի անունով են. և մնացեալները որո՞ց անուն կը կրեն: Թէ ո՞րն Ասպան բլուրն: Թէ քանի գե-ղեր կան այդ լեռանց ստորոտները և դաշտի մէջը՝ հնագոյն, որոց անունները կ'աղաւաղուին. և ամէն մէկ անունը՝ մէկ մէկ պատմութեան մատեան են անցեալին:

Ես չյիշեցի Սլկունեաց ցեղի տիրապետութիւնը Տա-րօնոյ երկրին, թէ՝ ո՛րքան հին և քաջ եղած են Մամի-կոնեանց հոն գալէն յառաջ. թէ ի՛նչ զրոյցներ կան անոնց վրայ և թէ ի՛նչպէս դեռ կայ գեղ մը Հայոց Սալ-քան կամ Սալկուն անունով:

Ես չյիշեցի այդ երկիրներու մէջ և սարերու վրայ բնակող Քրդերու թիւն ու ցեղերը. և թէ ի՛նչ են այդ ցեղերու անունները. և ի՛նչ գիտելիք անոնց ծագման ու կեանքին վրայ. զոր օրինակ, Հասնանցիք որ Մոկր-կանի ալ կ'ըսուին, «Մամիկոնեան տունն ենք մենք» կ'ըսեն: Պըյըքցիք, որ ծեր հայերէն կը խօսին նոյնպէս՝ «Հայ եմք եղեր, կ'ըսեն ու մեր ազատութեան համար զէնքը չձգեցինք, հաւատքը փոխեցինք»: Թէ ուստի են և ո՛րքան Զազայ Քրդերն, և ի՛նչ անոնց կեանքը:

Ես չկրցի այն ամեն շէհիդ կոչուած գերեզմանները, զորս Թուրքերը կը պատուեն, և շատ տեղ Հայն ալ Թուրքին հետ ուխտի կ'երթայ հոն: Բայց ով են այդ գերեզմաններու ննջեցեալները, որք առ հասարակ ծառերու պրակներով շրջապատուած կը լինին, և դարերու վրայ բարձրացեր: Անոնք կա՛մ Հայոցմէ պատուուած ճգնաւորի մը կամ նահատակի մը շիրիմ են, կա՛մ կռուի մը մէջ ինկած քաջի մը. թշնամեաց գնդէն, կամ հայրենեաց ու կրօնի պաշտպաններէն, ինչպէս է այն շէհիդը՝ Գլակայ վանքի և Կուխարսայ մէջ տեղ, ուր ըստ պատմութեան Զենոբայ՝ կա՛մ Արձան Բռնայեան է, որ արձանացաւ Արծրունի նախարարին զարկէն. կա՛մ Գեթսեհոնն է, որ թաւալեցաւ Տրդատի բազուկէն: Տեսած եմ հին Նախիջեւանու գերեզմանատան մէջ մի ցած կամարով ծածկուած շատ հին գերեզման, զոր Հայք և Պարսիկք Նոյի գերեզման կ'անուանեն: Նոյն օրինակ մի գերեզման ևս Մարանդ քաղաքի մէջ կայ, ուր բնակիչք բոլորովին Պարսիկ են. բայց ճրագլուսով կը պատուեն այն շիրիմը, և կը պատմեն թէ Նոյայ կնոջ գերեզմանն է, ինչպէս որ մեր հնագէտքն ալ Մարանդ անունը կ'ըստուգաբանեն ՄԱՅՐ ԱՆԴ:

Ես չկրցի այնքան աւեր և չէն եկեղեցիները, վանքերը, մատուռները, և անոնց վերաբերեալ պատմական հրաշքները. և աւանդական խօսքեր:

Ա.

Զոր օրինակ:

Մշոյ Սուրբ Կարապետի վանքը՝ կայ մի կաղ Դեւ, որ վառուած կրակներու մոխիրը կը չալակէ գետնի տակով կը տանի երկու աւուր ճանապարհ դէպ 'ի Տիգրանակերտ Փէրքարիմանի գեղին մօտ կը թափէ, որմէ մեծ

*բլուր մը ձեւացեր է ։ Անոր աշուղները այս մասին շի-նած երգը ։*

*«Լուսաւորիչը ժողվեց գլուխ լըցեց զընդան.*

*«Կաղ Դեւն եկաւ ասաց, եաման.*

*«Ձիս մի՛ դնեք զընդան.*

*«Ես կ'եղնիմ Սուրբ Կարապետու փաշեհան,*

*«Տանիմ թափեմ Փրէրաթման,*

*«Մինչ որ Քրիստոս գայ դատաստան» ։*

*Դիւաց ահագին բանակ մ'ալ սուրբ Կոմոնոսի վանքը կայ կարասներու մէջ լցած ու գետնի տակը թաղած, բերանները զմռած մինչ օրն դատաստանին ։ Իսկ Հոգւոց վանքը, որ Վասպուրականի մէջն է, հոն ալ* Ղուրբաք խաբուլի *անունով Դեւ մը կայ, որ նոյնպէս թոնիրի մա-խիրները կը թափէ, և շատ անգամ ալ վախկոտաց կ'երեւի եղեր. եայլն ։*

*Վանայ Արտամետոյ մօտ Կտուցու վանքին պատմու-թիւնը կ'ըսէ թէ՝ Կտուցի մը կտրած ոտքը վարդապետին ողջացուցած է. և կտուցը Համբարձման տօնին օդերը մի հասած խաղող բերեր է վարդապետին, որ պատարագ ըլլալ ընէր ու բաժնելու չունէր ։ Եւ, թէ՝ օր մը վանքի միաբանից դաշտի մէջ ցորեն հնձելուն՝ հարիսայ եփել տուեր է վանահայրը. օձ մը մէջն ինկեր, առանց գիտ-նալու ըլլալի ուտեն եղեր, կտուցը զինքն զարկեր հա-րիսային մէջ օձը հաներ, ինքն ալ մէջը մնացեր մեռեր է, ու հարիսան թափելով օձէն թունաւորուելէ ազատ-ուեր են ։*

*Փութկու սուրբ Գէորգի վանքը, որ Մոկաց բարձր, ամայի, և ձիւնոտ լերան մը վրայ շինուած է, ուր ան-ցորդները բքարգել կը մնան շաբաթներով, և կը խնամ-ուին ։ Ալպեան լերան Դոմինիկեանց վանքին պէս ։ Հոն աղբըր կայ, որ գուշակիչի պաշտօն կը վարէ. երբ նա*

խօսի, ուղեւորները կը վստահին ճամբայ ելլելու. Երբ օդը վտանգաւոր թուի, քանի մ'օր բոլորովին անխօս կը մնայ. եւայլն:

Ես չյիշեցի Կորճկանից, որ Կորճեայք կամ Կորդուաց լերինքն են, ու Մոկաց և Շատախու լերանց դեռ դեռ քարերուց վրայ եղած հին գրոյցները: Ալ Կաճկասայ աղբերը, որոց ջուրը խմողները խեղդամահ կ'ըլլան եղեր, և այդ Կաճկասայ գեղաչեւոց վրայ չինուած հազար տասապեկներ: Կապուտկողայ վրայ խօսուածները: Արտամետու Ծամմար բռնած անհաղին սարատմը, զոր Շամիրամ իւր ծամերուն կապեր, և Վանայ բերդէն պարսպան վէս Նեսոեր է մինչեւ հիմա:

ԼԱ.

Վարագայ լեռը որոց գագաթին վրայ եղողը կը տեսնայ եղեր թէ ինչպէս արեւը վերջնալոյսին կը մտնէ ծովը կը լողանայ մաքրուելու և հանգչելու՝ բոլոր ուղեւորութենէն։ Թէ՝ այն ժամուն յարեմուտս երեւցած չառայգոյն, մոխրագոյն և ձիւնագոյն ծալ ծալ ամպերը արեւուն անկողնոյ քողը և վարագոյրներն են: Թէ՝ անոր անկողինը ծովուն տակը ձգուած է փրփուրի վրայ: Թէ՝ արեւը թագաւորն է, ու լուսինը թագուհին: Թէ՝ աշխարհ արարած քնացած ժամանակը՝ լուսին կ'ելնէ չըջելու որ չտեսնան զինքը՝ ու բարիքներ կը սփռէ արարածոց, և ամօթխածութեան համար երբեմն ամպէ քող կը ձգէ երեսին: Թէ՝ աստղերը՝ լուսնոյ կոյս ընկեր և նաժիշտներն են. հարօրանձ աստղերը՝ նշան կուտան, որ ժամանակին վարդն ու ցորենը՝ բազում արդիւնք կ'առնու: Յարդգողը նշան է՝ որ ժամանակով ուրիշ արարածոց աստուած իւր մշակները ղրկեր մեր երկրի աստուծոյ կողէն յարդերը գողցեր, ու մեր աստուծոյ հրեշտակները նետ աղեղով զարկեր տարն-

նե՛ր են գողերը, յորդը թափեր երկնից երեսն ու մնա-
ցեր: Կչեաք տատղերը՝ նշան են որ Աստուած ամէն աչ-
խատաւորին իւր վարձքը կը կշռէ կուտայ: Ծովացող ա-
տուպները նշան են որ այնքան մարդ մեռան. վասն զի
ամէն ծնած ու ողջ մարդոց մէկ մէկ աստղ կայ երկինքը,
և մեռած վայրկենին կը սուզանի աստղը:

Եւ արդէնաւ Հայաստանի մէջ կանանց սեռէն՝ միայն
երախայից և պառաւանց արտօնութիւն կայ երեսբաց
երեւնալու, և բարձր ձայնիւ խօսելու. իսկ հասած աղ-
ջիկունք, նոր հարսներ և մանկամարդները թէ շրով կը
փաթթուին կը ծածկուին, և թէ մունջ ու նշանացի կը
խօսին մարդոց հետ. այսպէս է մեր լուսնոյ, թէև
թագուհի լինի, մութ ժամերուն այցելութիւն կու տայ
տխեղերաց, և մարդոց աշխատութիւնը նշանացի կը քա-
ջալերէ:

Վարդավառ տօնէն կ՚երեւայ արշալոյսէն առաջ յարե-
ւելս արեւուն ծագումն. անհամար լերան մը ասկէն կ՚ել-
լեն նախ 12 դաւազներ, ետ ետ տարածներ. և այդ լերան
վրայ լուսեղէն ճարճատներով ճառագայթի պէս կը դառնան.
լեռը կը ցածնայ. ամէն աստղերը երկնից գլուխը կը խո-
նարհեն. արեւը իւր երեսը լուացած ժամանակ ջուրի
ցօղերով կը սրսկուին աստղերը և դաշտերը. հուքերը
ամենքը վեր կը թռնին այս ջուրի սրսկումէն, կ՚արթնան
կը հրկիզն. յանկարծ արեւու ակի գլուխն ու հրեղէն
թռչանն կ՚երեւայ: Թէ՝ հրեշտակները կը հանդերձեն արե-
ւուն անկողինը, և կը հանեն ու կը հագուեցնեն անոր
հրեղէն հագուստը: Թէ՝ արեւու անձն՝ ջաղցի ջրատն ճախ-
րին կամ դունդին ձեւը ունի, որ գլորելով կը դառ-
նայ ու կ՚ընթանայ, և այդ դունդի փառերէն լուսոյ ճա-
ռագայթներ կը ցոլանան, ինչպէս ջուրի ցնցուղը ջաղցի
դունդէն: Թէ՝ աստղանները ըեր ըերող կը ժողվին

երբեմն և կ'ուզեն հակառակ կայնել արեւուն, որպէս զի մեր լոյս երեսը չտեսնան մարդիկ. բայց հրեշտակները հրեղէն սրով կը պատերազմին, կը զարնեն, կը վանեն զանոնք սեւ ամպերու մէջէն. և այս կռուի ձայնն է ամպերէն եկած որոտումն. փայլակը՝ Գաբրիէլ հրեշտակի սուրն է. կայծակը՝ հրեղէն նետն. ու ծիածանը՝ աղեղն:

Վարագայ լեռը՝ որ լի է զանազան ծաղիկներով, պաղորակ աղբիւրներով, կրէններով, և ոչխարաց հօտերով. իւր մէկ կողի վրան ունի Թէօփէ գեօլլ, և անոր շուրջը Սուլթան եայլասի. արքայական հովանոց. տեղի զբօսատանման: Հոն է Ոսկիպակ գիւղը: Վարագայ լերան գլուխն է Հռիփսիմեանց խաչին պահուած ու յայտնուած կարմիր ապառաժը, Գալիլէա անուամբ: Ասոր տեղէն պարզ կ'երեւի Մասիսը. և Հայաստանի շատ տեղերը: Ճանապարհին վրայ է միւսն Վարագը կիսափուլ. և այս փլածի շուրջը տնակներ, վանքներ, մարգեր, դալարիք՝ հողէն շատ. Բրնատոսի աղբիւրը, Կաթնու աղբիւր, Խաչ աղբիւր, անմահացուցիչ ջրեր: Մէկ կողմը ձորամէջ և զառ 'ի վար կու գայ յիօթնագմբէթ տաճարն Վարագայ. միւս կողմը սուրբ Գրիգորի աթոռատեղին և վանքը, նոյնպէս ձորամէջ այգիներով զարդարուն: Զառնապատայ ջուրը խոխոջելով լեռնէն ի վայր կը հոսէ, և այս տեղերը Ս. Գրիգորն ու Վարագ, գառն ու մաքին, հաւքն ու ձագը, կովն ու հորթիկ, ուխտաւորն ու տարփաւոր, զուռնան և նաղարան, սերն ու մածուն, եղն ու կարագ, խորովածն ու գինին, պարն ու կոխը, ժամն ու պատարագը ամէնը տեղի կ'ունենան զարնան կենաց օրերուն մէջ. բարեպաշտներուն և վայելչասիրաց միանգամայն ցանկալի և գոհացուցիչ:

Այս լեռը՝ բոլոր Վանեցւոց ինչպէս զբօսանաց, նոյնպէս և բանաստեղծական երգասացութեանց առարկան

նե՛ր են գողերը, յորդը թափեր երկնից երեսն ու հիմա-ցեր : Կշեռք տուողները՝ նշան են որ Աստուած ամեն աշ-խատաւորին իւր վարձքը կը կշռէ կուտայ : Ցոլացող ա-սուպները նշան են որ այնքան մարդ մեռան. վասն զի ամեն ծնած ու ողջ մարդոց մէկ մէկ աստղ կայ երկինքը, և մեռած վայրկենին կը սուզանի աստղը :

Եւ որովհետև Հայաստանի մէջ կանանց սեռէն՝ միայն երախայից և պառաւանց արտօնութիւն կայ երեսբաց երևնալու, և բարձր ձայնիւ խօսելու. իսկ հասած աղ-ջիկունք, նոր հարսներ և մանկամարդները թէ չորով կը փաթթուին կը ծածկուին, և թէ մունջ ու նշանացի կը խօսին մարդոց հետ. այսպէս է մեր լուսինն ալ, թէև թագուհի լինի, մութ ժամերուն այցելութիւն կուտայ տիեզերաց, և մարդոց աշխատութիւնը նշանացի կը քա-ջալերէ :

Վարդավառ տօնէն կ'երևայ արշալոյսէն առաջ յարե-ւելս արևուն ծագումն. ահագին լերան մը ասկէն կ'ել-լեն նախ 12 դաւազներ, սև սև արարածներ. և այդ լերան վրայ լուսնկէն ճակատներով ճառագայթի պէս կը զարնեն. լեռը կը ցածնայ. ամեն աստղը իրենց գլուխը կը խո-նարհեն. արևը իւր երեսը լուացած ժամանակ ջուրի ցողերով կը սրսկուին աստղերը և դաշտերը. հաւքերը ամենքը վեր կը թռնին այս ջուրի սրսկումէն, կ'արթնան կը ճչվլան. յանկարծ արևու ամփի գլուխն ու հրեղէն բոլորն կ'երևայ : Թէ՝ հրեշտակները կը հանդերձեն արե-ւուն անկողինը, և կը հանեն ու կը հագուեցնեն անոր հրեղէն հալաւը : Թէ՝ արևու անձն՝ ջաղցի ջրատին ճախ-րին կամ գունդին ձևը ունի, որ գլորուելով կը դառ-նայ ու կ'ընթանայ, և այդ գունդի փառերէն լուսոյ ճա-ռագայթներ կը ցոլանան, ինչպէս ջուրի ցնցուղը ջաղցի գունդէն : Թէ՝ աստղանները բեր բերող կը ժողվեն

երբեմն և կ՚ուզեն հակառ կայնել արևուն, որպէս զի անոր լոյս երեսը չտեսնան մարդիկ. բայց հրեշտակները հրեղէն սրով կը պատերազմին, կը զարնեն, կը վանեն զանոնք սև ամպերու մէջէն. և այս կռուէ ձայնն է ամպերէն եկած որոտումն. փայլակը՝ Գաբրիէլ հրեշտակի սուրն է. կայծակը՝ հրեղէն նետն. ու ծիածանը՝ աղեղն։

Վարագայ լեռը՝ որ լի է զանազան ծաղիկներով, պտ-ղորակ աղբիւրներով, կրէններով, և ոչխարաց հօտերով. Իր մէկ կողմի վրան ունի Թէօլիւ գէօլը, և անոր չուրջը Սուլթան Եայլասի. ամառային հովանոց. տեղի զբօ-սանման։ Հոն է Ամիրեան գեղը։ Վարագայ լերան գլու-խըն է Հախվախնանց խաչն պահուած ու յայտնուած կարմիր ապառաժը, Դաշիկա անուամբ։ Այն տեղէն պարզ կ՚երևի Մասիս. և Հայաստանի շատ տեղերը։ Ճանապարհն դիւր է, մինչև Վարագը կ՚ելլուի. և այս վանքի չուրջը տասնակներ, վանքեր, մարգեր, գագա-թեք՝ հովէն շատ. Երկաթի աղբիւրը, Կաթն աղբիւր, Խաչ աղբիւր, անմահացուցիչ ջրեր։ Մէկ կողմը ձորամէջ և զառ ՚ի վեր կու գայ բօթնապմբէթ աւանը Վարա-գայ. միւս կողմն սուրբ Գրիգորի աթոռանիստն և վանքը, նոյնպէս ձորամէջ պարտէզներով զարդարուն։ Զառանցա-սայ ջուրը խոխոջելով կենէն ի վայր կը հոսէ, և այս տե-ղերը Ս. Գրիգորն ու Վարագ, գառն ու մաքին, հուքն ու ձուկ, կոյն ու հորթին, ուխտաւորն ու տարփաւոր, կուսանն և նազարէն, սերն ու մածուն, եղն ու կարագ, խորոված ու գինին, պարն ու կոխը, ժամն ու պա-տարագը ամենը տեղի կ՚ունենան զարման կենաց օրե-րուն մէջ. բարեպաշտներուն և վայելչասիրաց միանգա-մայն զանկալի և գոհացուցիչ։

Այս լեռը՝ բոլոր Վանեցւոց ինչպէս զբօսանաց, նոյն-պէս և բանաստեղծական երգասացութեանց առարկան

և նիւթն է ։ Ունի նա իւր հին պատմութիւնը քաղաքական և սրբազան ։ Ունի հրապուրիչ և ազդեցիկ բնութիւն վայելչական, որոյ քարերն անգամ ձայն և բարբառ ունին ։ Սերովբէից, մուսայից, քաջաց և փերիկաց վայր ճանչցուած է նա ։ Տուշանիկի Տուշանց գեղը և անոր գերեզմանը, զոր Տուշան խաթունի գերեզման կ'անուանեն ցայսօր ․ Սարարանջան աղբիւրը, այդ արքայադուստր Տուշանիկին օծխար ․ Պղնձէ քաղաքը՝ Վարագայ դաշտին մէջ, և յամենայն կողմանց չէնքով, աւերակով, նշանաւոր անուններով պարապխակուած այս լեռան ամէն կողմէն իրեն կը նայուի, ու ինքը կենսատու օդ և առատ ջուր կը բաշխէ երկրին ։

Դուղ գետը որ Վարագայ ոտքի տակէն կը բխի, և անյիշատակ ժամանակներէ հետէ իմաստունները հնարեր են խրամով մը գետին տակէն անցընել անոր ջուրը, որ Ջորովանք, Զրուանդանց, և Արդոյ գեղերու առջեւէն իր ընթացքը կ'առնու և կ'երթայ Վանայ բերդի ներքեւէն մինչև ծովուն միջակէտը ու այն տեղ դուրս կուտայ իւր ջուրը ։ Թէ՝ այնքան ահագին և անհուն է այս գետը, որ եթէ բացուի իւր ծածկոյթը՝ պիտի ջրողողէ այդ բոլոր երկիրը ։ Թէ յառաջ այդ ջրով ծածկուած է եղեր բոլոր Վանայ հովիտը ծովի բերնէն մինչև Վարագայ ստորը ։ Թէ՝ ինչպէս մինչև ցայժմ տեղ տեղ գետնի վրայ անդունդ կը գտնեն և այդ գետի ընթացքի շառաչիւնը կը լսեն ։ Թէ՝ ինչպէս երբեմն տեղ տեղ ծածկոյթը ծակուեր է և մարդ կամ անասուն անկէց ջուր խմած՝ երբեմն ալ բռնացուած ժամանակ ջուրը զիրենք քաշեր կլլեր կամ խեղդեր ․ արդէն ասոնց համար է որ Դուղ գետ կ'ըսեն ։

Թէ՝ ինչպէս Վանայ բերդի արեւմտեան ծայրը ապառաժի մը տակէն մեծ ակ մը կը բղխի այդ ջրէն, և անուանը Մասխոռ է ․ այս ջրի մէկ մասն է միւս ակ մը, որ

*կը բղխի մօտ Խօշխօշին Ուլու ջամի բառած հին մզկի-թի մը քով, որ ըստ Թովմայի Արծրունւոյ, Գագիկի շի-նած չքնաղակերտ Ս. Սիոնն է. և այս ջուրը կ'երթայ խաղախորդարանը, ուր կանայք ու խոհի կ'երթան լուաց-ուելով բաղդ բացուելու և տղայ ծնանելու համար: Այս տեղ դայլութիւնը կը փոխէ այդ ջուրը:*

## ԼԹ.

*Վանայ մէջ մէկ թաղ կայ բաղչայ, բերդի պարապէն դուրս ; որ մինչև այսօր ՀԱՅԿԱՎԱՆՔ կը կոչուի. աւան-դարանք այս անունը կը զանե, որ Հայկը իջևանած է այն տեղ. դուցէ Վան թագաւորէն և Շամիրամէն առաջ Վան քաղաքը՝ Հայկավանքէն կոչուեր է ՎԱՆ:*

*Հայոց ձոր, ուր Հայկին ու Բէլայ պատերազմն եղաւ, մինչև այսօր Հայոց ձոր կը կոչուի. այն տեղն է Տըրչոյ գեղը, ուր Հայկի լայնալիճ նետով բացուած հերայ Բէլի զրահապատ կողի պատուհանէն արիւնն չորը կը տես-նուէր. այն տեղ է Հայկ (1) և Աստուածաշէն անունով գեղերը: Աստուածաշէնու առջև կայ մի հնաշէն բերդաձև-ւած բլուր, հաւանականաբար Հայկի գերեզմանատեղն ան-բոցն է, որոյ վրայ գեղին ուխտը կ'արածան այսօր. և քանի մը տարի յառաջ ուխտարած մանկտին մի քանի հատ երկաթէ նետի գլուխներ գտած էին, զորս գեղացիները իրենց խոփ և գերանդի շինել տուած էին: Ինչ անգին գիւտ. ինչ խորհրդաւոր գործիք:*

*Ո՛ւր տարաւ և ո՛ւր բերաւ գլխ այս նկարագիրը, զոր*

---

(1) Բնակիչք Խէկ կ'անուանեն այս գեղը. և Խաստ ձոր կ'անուանեն զՀայոց ձորն. որ կրնայ բառիլ նաև Հայոց ձոր. յայտնի է որ Վանեցիք Հ տառը Խ կը հնչեն. իսկ Աստուածաշէն՝ դուցէ լինի Հայկաշէնն, թէև պատմիչները զՀայկաշէնն Արմաւենակերտի մօտերը ցոյց կու տան:

միայն երբ ծրագիր կը գրեմ։ Դառնամ պիտի, գաղթիմ պիտի քանզի անտանելի են այսպիսի վայրերը, և ան-տարա՝ անոնց վրայ խօսուածները ու երեւցածները։

Աշխարհ մը՝ որուն գիւղաքաղաքները Քրիստոնէակա-նի փոխուած, մեհեանը՝ սուրբ տաճարի, զոհը՝ մատա-ղի, կուռքերը՝ խաչքարի, և ամեն ինչ որ գեղեցիկ էր՝ Քրիստոնէութեան եղած և սրբագործուած, բայց աւանդապաշտներն անոնց ալ չեն թողած խոշոր հնոց զրոյցները և ծէսերուն ու արարողութեանց պատմու-թիւնները, աւանդները։ Ասոր երբեմնի գաւառը զատ զատ անձանց գործ է ստորագրել, և զատ զատ մատեան կարդալ։ Միայն թէ չեմ կրնար զանց առնել նաև Թուխ մանուկներու և Ցասման խաչերու վրայ ալ բացատրութիւն գրել համառօտ մը, որոնցմով լիքն է Հայոց աշխարհը։

ԼԴ.

Հայաստանի մէջ իմ տեսած տեղերս, հազիւ գրեթէ կը գտնուի գեղ մը, որ Թուխ մանուկ չունենայ. Թէպէտ քաղաքներու մէջ ալ կը գտնուին։ Ամենափոքրիկ մա-տուռ մը, կամ առանց կաւաշաղախի շարուած քարե-րով շէնք մը, որոյ մէջ այլոյ մ'անգամ չպարունակեր, խաչքար մը, այլ կամ կորած, կամ գերեզմանաձեւ շէնք մը, և ասոնց մէջ ճրագ ու խնկանոց, ուր կ'երթան բարեպաշտ կանայք և ցաւագար կամ ախտաւոր անձինք ձէթ և մոմ վառելու, խունկ ծխելու, ծունկ դնելով, կուրծք ծեծելով, բալով և աղօթելով իրենց ուխտը կը կատարեն։ Թուխ մանուկն այս է։ Թէ փողոցներու մէջ լինի այն, թէ տուներու մէջ, և թէ այնպիսի տան մը և այգի մը կամ արտի մը մէջ, զոր Հայոցմէ առած լինին Տաճիկները, այսու ամենայնիւ Հայերը ազատ են իրենց

Սուրբին ուխտի երթալու, Սուրբին հրաշքները հռչակելու. որուն վկայ կը կոչեն զնոյն իսկ Տաճիկները. և այս անընդապահութեամբ և Տաճկաց վկայութեամբ՝ Թուխ Մանուկներէն շատերը շինուած են եկեղեցի, ժողովրդանոց, նոյն անունը պահելով Թուխ Մանուկ: Իսկ թէ ի՞նչ սկիզբն ունի այդ աւանդապահութիւնը: — Ինձ կը թուի թէ՝ կամ իրօք Ս. եկեղեցեաց տեղ են եղեր այդ տեղերը, զորս բարբարոսութիւնը քար ու քանդ է ըրեր, անհետացնելու նպատակաւ Հայոց աշխարհէն քրիստոնէութիւնը. բայց սրտի տաճարները մնալով կենդանի և անմահ՝ նշանակած են այն տեղերը, և որդւոց յորդի ցոյց տուած ու պաշտած՝ չէնքին տեղը, և անոր հողն ու քարը նուիրական են պահած: Եւ կամ, հալածանաց դարերու և տարիներու մէջ, սուրբ հաւատքի համար նահատակուողներու արիւնը թափուած կամ անոնց թաղուած տեղերն եղած են, զորս նոյնպէս պաշտելի պահած են: Իսկ եթէ Թուխ Մանուկ կոչուելուն և անուան ուշադրութիւն տանք, թերևս լինին դուքս մանուկներ, խլուած իրենց մայրերու ձեռքէն, կամ կալած անոնց տուներէն, և գրկին մէջ մորթուած քրիստոնէութեան անուան և սիրոյն համար, թուխ գոյն ստացած բաստային արեան մէջ թաթախուելով. որոց յիշատակի համար յատուկ պատմութիւն մը չկայ, բայց ի այն սրբազան երգէն Շարականացին, որ է «Կանխաւոր պատա-
«րագք, մանկունք տիօք և կատարեալք խոստու-
«թեամբ, որք փոխանակ կաթին արիւնք դիեցին զմայ-
«րեացն. բարեխօսեցէք առ տէր վասն մանկանց
«եկեղեցւոյ»:

ԼԳ.

Յասմանեան այն խաչաքարերն են, որ քաղաքէն դուրս ու բաց մեծի մասին վանքերուն, գեղերուն մօտ արտի,

անդաստանի բոլորը պատուած բլուրներուն վրայ տնկուած են։ Այդ խաչքարերը՝ կամ առհասարակ գեղացիք միանալով, կա՛մ իշխան մը միայն իւր քակով, ծախս կ'ընեն, կը տնկեն, օծել կուտան մեծ հանդիսիւ այդ քարին վրայ քանդակուած խաչը, և կը տնկեն ի պահպանութիւն իւրեանց գեղին։ Մեծ հացկերոյթ կը կազմեն, եզներ կը մորթեն, հարիսայ կամ մատաղ կ'եփեն, բոլոր հասարակութեան անխտիր կը կերցնեն։ Այս բարեպաշտ սովորութիւնը մինչև այսօր ևս պահուած կայ Հայոց մէջ։ Թէ ինչո՞ւ համար բռուած է Յասմանելիաչ. վասն զի երբ տարաժամ ձիւն ու կարկուտ տեղայ, բերքերուն վնասէ. երբ մարախն ու թրթուրը բոյն ու կանանչը զօսացնեն, երբ երաշտութիւն լինի. երբ ցաւ ու մահ պատահին մարդոց և անասնոց. երբ երկրաշարժ լինի. և ինչ վնաս որ պատահի երկրին, այն որ մարդոց բռածը չէ Աստուծոյ ցասումին կը համարին. և այդ ցասման դէմն առնելու համար Քրիստոսի խաչին պատկերը կը բարձրացընեն այսպէս երկնից առջև, որ պատուհասից հրեշտակը պատկառի խաչէն, և Աստուած հաշտուի։ Ու բաշխելով հաց և մատաղ հասարակութեան, իրենց սրտի ներողութիւնը միմեանց և գթածութիւնը ի գործ կը դնեն, որպէս զի և Աստուած ներէ իրենց յանցանաց, ետ առնու իւր ցասումն երկնաւոր Հայրն գթած։

ԼԵ.

Թէպէտ ձիգ կ'ընեմ չափով հանել մերձաւորներս կամ բուն գրքիս նպատակէն, բայց նիւթերու արտաքնութիւնը հարկ կը դնէն երկարել խօսքը։ Հիմայ նորէն միտքս եկաւ քանի որ մեր մտադրութիւնն է ժողովրդական կենաքէ ծանօթութիւններ քաղել, որոնք լոյս կարող են տալ մեր ազգային պատմութեան և լեզուին կամ գրա-

կանութեան, ուշադրութեան արժանի է ուրեմն անոնց մէջ եղած ամառկան, գեղջական, քաղաքական եւ կրօնական արարողութիւնները, տօները, երդումները, անէծքները, օրհնանքները, երգերը, պարերը, տղայոց խաղերը, որոնք ալ հասարակ կեանքի եւ լեզուի պատմութիւնը կը կազմեն։ Օրինակ. — Փեսային՝ թագաւոր կ'ըսեն. անոր գլուխը փետուրէ ջղաց կը զարնեն. պսակի ժամանակ մէկը թուր կը բռնէ, իբրեւ մազխաղ կամ զինակիր թագաւորին. մէկը՝ թագաւորին հայրը կը հագցընէ. մէկը՝ բոլոր հարսանեաց սեղանին կերուխումը կը անօրինէ, խաղն ու հանդէսը կը կարգադրէ։ Փեսան ժամէն եկած ժամանակ ձի կը նստեցնեն, եւ այն տեղը իր ափերով դրամ կը սփռէ, աղքատներ եւ մանկտին հրճուելով կը հաւաքեն, «Աստուած շատ արեւ տայ մեր թագաւորին ու թագուհւոյն» գոռալով. ՚ի յիշատակ՝ Տեղ ոսկի տեղայոյն ՚ի փեսայութեան Արտաշիսի եւ Սաթինկան . . . :

Զուռնայի եւ նաղարայի ձայնով եւ պարողաց առաջնորդութեամբ կ'ընթանայ փեսան. եւ երբ տան առջեւը կը հասնի, շեմին վրայ մէկ խոյ կը մորթեն, եւ թագուհւոյն թեւէն բռնած ներս կը տանին. այս վայրկենին տէրտէրն ու տիրացուն «Արեգակին արդարութեան ծագման առաւօտդ» շարականը կ'երգեն, զուռնան կը փչէ, պարողք կը պարեն, թագաւորի մայրն ալ քաղցր փոխինդ ու եղով բաղարջ, եւ զանազան մրգեր կը հանէ եկուորաց առջեւ՝ վառած մոմերով։ Ուրիշ մէկը՝ «Թագաւորի մէր դուրս եկեր, քեզ ինչ ու ինչ եմ բերեր» խորհրդաւոր խաղը կ'երգէ, որուն մէջ հարսի ամակին պաշտօնները կը թուէ։ Թագաւորի մայրը խանդաղատեալ արտասուալից կը համբուրէ իր թագաւորեցեալ որդին եւ հարս թագուհին, որ գլխէն մինչ ոտքը քօղար-

կեալ ծածկուած է։ Եւ այլ շատ արարողութիւններ կան, զորս չգրեցի մանրամասն։

## ԼԶ.

Տղայոց և Երիտասարդաց խաղերու մէջ այնպիսի տեսակներ կան, որք պարզաբար մանրամասնութիւն են, և քանիններն ալ՝ մարտաղիր պատերազմիկ կրթութիւն։ Խիստ ճարտար հանելուկներ յօրինած ունին. և բաղդի խաղերը որոնցմէ է՛ն նշանաւորն է Վիճակի խաղը։ Վիճակը կոյս աղջիկները կը պատրաստեն Համբարձման տօնին, եօթն աղբիւրէ ջուր լեցնելով մէկ ամանի մէջ, և վարդով, ռէհանով և ամէն բացուած անուշահոտ ծաղիկներով կը զարդարեն զայն. Իւրաքանչիւր կոյս մէկ խորհրդաւոր նշան կը դնէ վիճակ. գիշերները աստղունք կը դնեն զայն, և ամենայն զգուշութեամբ կը հսկեն. վասն զի երիտասարդները հետամուտ են գողնալու։ Աքանչելի է այս տաղը, զոր Վիճակի բացման ժամուն կը նուագեն օրիորդները, իղձերով լի տաղ, յորում իւրաքանչիւր ոք կոյս իւր ապագայն, իւր կեանքը, իւր սէրը կ'ամփոփէ 'ի մի երիտասարդ, որ լինի ազնիւ ձիրքերով, ազնիւ մարմնով, արի, վեհանձն, յաջողակ, բարեպաշտ, իմաստուն, զոր կը խնդրէ բաղդէն տալ իրեն համար ամուսին կամ փեսայ. և ահա երջանիկ է նա։ Իւրաքանչիւր աղջկան ըղձացած հանգամանքները, որոնցմով համակիր պիտի լինի փեսայն օրիորդին, և այն հանգամանքները՝ որոնցմով երջանիկ պիտի լինին երկուքին, այդ տաղերուն մէջ կը թուին։ Մեծ հանդէս է Վիճակի բացումն, և որքան օրիորդաց, այնքան ևս Երիտասարդաց ցանկալի ու հետաքրքրական է այն օրը և այն հանդէսը։

## ԼԵ.

Խօսիմ մէկ քանի աւանդութեանց վրայ ևս :

Վարդավառի տօնին, այն ինչ եկեղեցին՝ Քրիստոսի պայծառակերպութեան աստուածային տօնը կը տօնէ, նոյն օրը, բոլոր ժողովուրդն Հայոց, արք և կանայք, ծերք և մանկունք ջրախաղութիւն կը կատարեն. թէ՛ տուներու մէջ, և թէ՛ փողոցները, կամ դաշտերու մէջ գետերու ափին կամ աղբիւրներու ակին ու աւազանին մօտ խմբուած զիրար կը ձգեն ի ջուր. կամ գանձ կուժերով իրարու վրայ ջուր կը թափեն : Հայոց Նաւասարդն է Վարդավառը : Թողլով Վահևունեանց տօնի հանդէսն ի Տարօն, զոր կը գիւցաբանէ հնագէտն և բանագէտն Մ. Թովմայեանց իւր Սօս և Սօնթիպի մէջը : Նաւասարդը Հայոց առաջին ամիսն է. այսինքն երբ մարդկութեան երկրորդ սկիզբն և հայրն Նոյ՝ Նաւ ով հասաւ ՚ի Մասիս, փրկուելով ջրհեղեղէն՝ Աստուծոյ նախախնամութեամբ, և երբ իջաւ նաւէն, զոհեց Աստուծոյ, այն օրէն առաջին ամիսն սկսաւ նորոգել աշխարհին, անուանելով Նաւասարդ : Եւ Նոյ՝ որպէս զի ջրհեղեղին յիշատակը անմոռաց պահեն մարդիկ. պատուիրեց իւր որդւոց՝ ջրով ջրանել զիրար : Ինչպէս նաև կայ Վանայ մէջ մէկ սովորութիւն մը ևս, որ նոյն Վարդավառի օրը բնակիչք թաղ թաղ բանակ կը կազմեն և իրարու դէմ պարսատով և փայտէ նետով ու աղեղով կռուի կ'ելլեն իբրև խաղ : Այս ևս կարելի է Հայկավանեից բնակչաց հին աւանդութիւն համարել, իբրև յիշատակ պատերազմին Հայկայ ընդ Բէլայ :

Վարդավառի տօնին Աղաւնի թռցունելու աւանդական յիշատակն ալ յայտնի է, որ միայն Հայոց սեփհական սովորութիւն է ի յիշատակ Նոյի արձակած աղաւն-

ւոյն. զոր կը շարունակեն Հայաստանի շատ գաւառ-ները, և ի Պոլիս Բուլղարի Ս. Կարապետ եկեղեցւո տօնախմբութեան օրը, Վարդավառին, աղաւնի կը թռուցանեն, և այդ տօնը ուրիշ ազգերէն անուանուած է գիւվէրջին փանայիրի, Տօն աղաւնեաց. Նոյայ որդւոց Նախիջևանու բնակչաց Հայոց գաղթականութեան հետ, այս ջրհեղեղեան և աղաւնեթռուցիկ տօնն ալ գաղթա-կան եկած է մինչև ի Վառնա:

## ԼԲ.

Բանասիրաց հետաքրքրութիւնը գրգռելու փափա-գով կը փութամ ծանուցանել, թէ Վառնայի Տ. Սար-գիսեան Գեր. Երեմիա եպիսկոպոս, Արժ. Ղևոնդ վար-դապետ Փիրղալէմեան և Արժ. Գրիգորիս վարդապետ Աղաւնեանն քանի մը տարիէ հետէ նախանձելի աշխա-տութիւն մը ստանձնած են, որոնք իրենց հանգիստ ատեները հնութեանց ստորագրութիւնը, վանքերու և եկեղեցեաց, կամ տուներու և աւերակաց մէջերը գըտ-նուած խաչքարերուն, հին ձեռագիր մատեաններու յի-շատակարանութիւնները օրինակած ունին, և անոնց հետ մէկտեղ ժողովրդեան մէջ խօսուած հէքեաթները, անէծք-ները, առասպելները և գուսանական շատ մը բաներ հաւաքած ունին 'ի գիր, անշուշտ օր մը 'ի լոյս հանելու համար: Անոնցմէ և Տրապիզոնցի գիտնական Պօղոս պատուելի Թոփմանեանց, որ Տրապիզոնի և Տարօնոյ ստո-րագրութիւններ աշխատասիրած է յանձնարարութեամբ Ս. Հայրիկին, հանգերձ կարևոր բացատրութեամբ հին աւանդութեանց և առանձնայատկութեանց զանազան վայ-րաց, որք կը գտնին այդ երկու աշխարհին մէջ, և հանգերձ նկարագրութեամբ Տարօնոյ բնակչաց սովորու-թեանց և լեզուին: — Դեռ տպագրուած չեն այդ գործ-քերը —:

## ԼԹ.

Ես ինքս ալ վաղուց սկսած էի ծուլանալ և գրելս սի-րել տալու այսպիսի աստեղծայից, և Արծուի Վասպու-րականի մէջ 'ի Վարագ տպագրել տալ Վանա պատ-ուանից աղօթքը, ևայլն: 'Ի Մուշ ալ Տարօնոյ Արծուիկի մէջ Մշեցւոց լեզուով գրուածքները և քանի մը երգեր տպ-ագրեցի. բայց որովհետև մէջս Արծուոյ Թռիչը խափա-նեցին, և Արծուիկը խափանեցին, երկուքին չարունակու-թիւնն ալ վատութեանց և մատնութեանց զոհ ըլլալով: —Սակայն որպէս զի չխափանիմ գրութեանս ընթացքէն, ուրիշ բան մի չեմ ըսեր այս մասին: —Իսկ ես երբեմն 'ի Վան, երբեմն 'ի Մուշ, երբեմն 'ի Պոլիս, երբեմն 'ի Կարին, յաճախ և ընդ փոյթ կը տեղափոխուէի վրաս եղած հարկէն, և իմ հանրական բաղձանքիս՝ գրակա-նութեանս հակառակ, մէջս դատապարտեալ էի այնպիսի պաշտօնական ծառայութեանց, որ է մշակութիւն, արհ-եստութիւն, և . . . անձնանց վարչութիւն . . . վասն որոյ հաւաքածներէս և աշխատասիրածներէս բաւական բան կորուսած եմ, և անոնց բանէ աւելի ժամանակս: Այսու ամենայնիւ տակաւին 'ի ձրանն ունիմ հրատարա-կելու արժանի բաներ, թէ հին թէ նոր, զորս կը խոս-տանամ հանդերձեալ 'ի լոյս ածել:

## Խ.

Մինչեւ ցարդ ինչ որ գրեցի, անանց և ոչ տարեգրա-կերն ունէի, այլ որքան միտքս տպաւորուել, յիշեցի և գրեցի: Այժմ կարեւ բան նիւթ այս գրքոյկիս վերջը կցորդեմ Դաւիթ Սասունցին կամ Մհերի դուռ վէպը, զոր երեք տարի համառօտ եղաց ձեռք բերելու և ոչ ոք գտայ որ ամբողջապէս գիտենար. մինչեւ 1873 յունիս

տեղւոյն՝ Մշոյ դաշտի Առնիստ գիւղի եկեղեցիան Գ. Կրպօն Ներկայացաւ ինձ Արժ. Օհան վարդապետի միջոցաւ: Սա կը պատմէր թէ իր վարպետը շատ ընդարձակ գիտէր այս պատմութեան, և թէ մէջ ընդ մէջ շատ անգիր ոտանաւոր խաղեր կային, որ ձայնով կ'երգէր: Թէ՝ այդ վարպետը երկու Կոչիկ աշակերտ ունէր, որոնք շատ կատարեալ սորված էին, և թէ հիմա՝ բաւական ժամանակ պատմակ պատմած չլինելով, շատ կտորները մոռցած էր: Այսու ամենայնիւ երեք օր զինքը պահեցի, խնդրեցի, պատուեցի, պարգևատրեցի, և նա ինքզինքը կազդուրելով պատրաստելով, պատմեց բերանացի. զոր իրեն բարբառով 'ի գիր անցուցի: Պատմիչի լեզուին մէջ Բաղիշեցւոց բառեր կան գործածուած. պատճառն այն է որ պատմիչի գիւղը թէպէտ Մշոյ կը պատկանի, բայց Բաղիշոյ մօտակայ է. ընդհանրապէս Խոյթոյ և Ջուխուրայ գեղերու Հայոց լեզուն այս ոճն ունի:

Պատմածին նիւթը Արծրունեաց նախարարութիւն և Սասնոյ գաւառի շինութիւն ու ազգնաւորութիւնն է: Աստուածաշունչէն, և մեր ազգի պատմութիւնէն յայտնի է որ Ասորւոց Սենեքերիմ արքային իր Ադրամելէք և Սանասար որդիքը կուռքին զոհ պիտի մատուցանէր, սոնք ալ իրենց հայրը սպանեցին, և փախստեայ եկան 'ի Հայս՝ մեր Սկայորդւոյ ժամանակը: Սանասարը բնակեցաւ 'ի Սասուն, և Ադրամելէք՝ Վանայ ծովու կողմերը, Կապուտկողայ մօտերը: Ասոնց պատմութիւնը թէ Խորենացին, թէ Թովմաս Արծրունին, և թէ այլ պատմիչներ ընդարձակ կը գրեն: Հարկ չկայ մեզ կրկնել թէ որքան յաջողութիւն և մեծութիւն գտան Հայաստանի կառավարիչներէն, և ինչ ծառայութիւն և քաջութիւն ըրած ունին իրենք և իրենց սերունդ:

Կը տեսնուին այս աւանդուածքին մէջ այնպիսի կար-

ներ որ պատմագրութեանց կը համաձայնի․ բայց և կտորներ ալ կան որ բոլորովին ժամանակագրութեան, տեղեկագրութեան, և ամէն համեմատմանց հակառակ են։ Դէպքեր՝ որ յառաջ քան զՔրիստոս են, քրիստոնէաբար կը դրուցուին, և Սանասարի ու Ադրամէլէքի ժամանակը Մշոյ Ս. Կարապետի վանքն ու Հայերը խաչապաշտ կը ներկայացուին։ Ասոր մէջ յիշած Մըսըր՝ գուցէ Մուսլ կամ Մուսուլ ըլլայ, որ համանմանութիւն կը վերցնէ, և Սասնոյ տիրապետութեան սահմանէն շատ հեռու չէ։ Բաղդադն Բաղդադ է, Խլաթն՝ Խլաթ, Կապուտկողն՝ Կապուտկող. նոյնպէս և միւս ամբողջ յատուկ անունով տեղերը ուղիղ են։ Իսկ Կաղզուանը Կարսայ մերձ է, և յայտնի է որ Վրաց իշխանութեան տակ գտնուէր է այն գաւառը։ Խանդուտ խանում, և Ծըրդըղան խառստական, Հռմզայ լուսայ փէհլիւանները — ըմբշամարտները — որ այս խօսքերուն մէջ կ'երեւնան, գուցէ վիպասանից ծանօթ ըլլին․ և ուրիշ Վրաստանի բնակչաց։

Անդրամէլէքի,— կամ, պատմողի բառովը ըսեմ —, Արամէլէքի որդւոց անուններէն երեքը բոլորովին բանաստեղծական անուն կը թուին. Ճենղափոռիկ, Ցռանիլեգին և Խորգուսանն։ Դուանը՝ երգիչ կը նշանակէ․ իսկ առաջին երկու անունները չեն բացատրուիր։ Ջենով Օհան և Դաւիթ Հայոց ծանուցեալ և հասարակացեալ անուններ են, բայց քրիստոնէութեան դարուն մէջ։ Արդէն Դաւթի կեանքը և գործերը միջին դարուն կը վերաբերին, բայց անմիջական զաւակ ըլլալ Ադրամէլէքին այդ յաւիտենական առասպել է։ Ամբողջ այս դրուցքը նկարագիր է քաջութեան, ընտանութեան, բարեպաշտութեան և պարզ ու անխարդամանկ յաղթութեան Դաւթին՝ իր սիրոյն ու իր հետ իր տխրեալին հետ։ Այս դրուածք իր բոլոր անկատարութեամբ հանդերձ՝ հետաքրքի ոճեր ունի տառացուածքի։ Դիւցազնի ·

բաղկի ուժը անհամեմատ ցոյց տալու համար՝ երբ Դաւիթին խելք կու տայ Չարչիգի ձեռքէն գուրզը, նաեւ կու տայ ալմաստ՛ս ուժգին, որ տակաւին մինչեւ ցայսօր կ՚երթայ նետերը թափէն, Դաւթի ուժոյ անպատմանութիւնը եւ ախոյեանց անհունութիւնը ցուցնելով։ Այս գրուածքի մէջ կը տեսնէ հետաքրքիրն՝ գեղջկական կեանքի հանգամանքները. Աքամէլէքի մահուան համար Սասունցւոց սուգը. Յենի Թորոսի ուխտը. «Հացն ու գինի, տէրն կենդանի» երգումն, հարսանիքներու համար թուրքի տակէն անցնելու ազատութիւնը, Դաւթի եւ իր հօրթարած ընկերին մահերութիւնը։ Խանդուռ խանդէմին աչուղ գիկելը՝ Դաւիթը իրեն վրայ սիրեցնելու։ Դաւիթի անխեհերութիւն եւ վեհանձնութիւնը, երբ Մսրամէլէքի հետ կը զարնուին։ Խանդութի քաջութիւնը, եւ փէհլիվաններուն ճիւաղական նկարագրի ահագնութիւնը։ Ձէնով Օհանի ձայնի ուժն եւ ահաւորութիւնը. եւ Մհերի զօրութիւնը, որ խաղը անհամեմատ մարդկանց կը կուցուցանէ, եւ երկրագունդն ալ զայն կրելու անկարողան։

Այս գործին հրատարակութիւնը հասկցողին համար արժէք կ՚ունենայ. բայց կարծեմ արհամարհողներ ալ եկի պիտի լինին եւ ապախտողներ, ոչ միայն այս գրուածին կարգը. այլ ամբողջ այն գրքոյկը, ըստ որ եւ իմ անձը։ Անոնք չհասկցողներն են։ Բայց մեր փոյթը չէ։ Քաջալերուած կը համարիմ զիս, եթէ համբանքով քանի հոգի եւեթ լինին հաւանող այս գործոյն, եւ կը շարունակեմ, խրախոյս տալով այլոց որ՝ հետեւին, աշխատասիրեն ձեռք բերել, ՚ի լոյս ածել այսպիսի գրուածքները։

Մի քանի խօսք ալ **Մհերի դրան** վրայ։

Վանայ բերդէն դէպ յարեւելս նայելով՝ այգեստանեայց հիւսիսակողմը փոքրիկ լեռնագօտի մը կայ, որոյ արեւելեան գլուխը կ՚ըսուի **Զըմզըմի մաղարայ**. արեւմտեան ծայրը՝ **Ագրփի**. և մէջտեղը **Մհերի դուռը**։ Ա-ռան այս երեքն են անուանածներս, որ կը նային Այգեստանեայց վրայ։ Զըմզըմի մաղարան քարայր մի է ընդարձակ. որուն մէջ կ՚երթան մարդիկ շրջելու, ուր ձայն արձակած ժամանակ զըմփ զըմփ արձագանք կուտայ։ Այն քարայրին դէպ ի արեւմուտքը, ամենամութ անկիւնը, քարէ փորուած բաց դուռ մը, և անկից ներս ճանապարհ մը կը ցուցնեն, յորմէ սաստիկ քամի կը փչէ։ Կը պատմեն թէ այդ լեռնափոր ուղին կը տանի մինչեւ Վանայ բերդի մէջ. դուցէ հաւանական կամ առաջ լինի։ Արդէն Զըմզըմ զըմփ մաղարայի լեռնագագաթը բերդաձեւ է, և այս քանի տարին հետէ այն անկերէն փորելով չէնքի համար քար կը հանեն. հողակոյտներու տակ երեցան կոխածոյ քարերով չէնքեր, հողէ կարասներ և կուժեր, որոց մէկ քանիին մէջ ցորենի չոր հատիկներ լեցուած էին. անկեղծ պղնձէ շինուած արհեստական աթոռի կտորներ, և մէկ խոյ, ու խոյի վրայ հեծած մարդ՝ նոյն պղնձէն թափծու՝ արձանի կերպով։ Այս վերջին կտորը՝ Եղեսեան Գէր. Սրբազանը այն ժամանակ Վան գտնուելով իւր հետն տարած Պօլիս բերած է։ Տակաւին քար հանել կը շարունակեն, և չէնքեր կը բացուին, ու կը պատմեն որ երկաթէ ներեր ալ կը գտնուին։

**Մհերի դուռը** ամենայերջ քար է, զոր տաշեր և կոկեր են մեծ դրան ձեւով, և վրան բեւեռագիրներ դրած են, խիստ յստակ։

Բեւեռագիրները՝ նկատողութեան արժանի են, որ

Հայաստանի ամէն նահանգներէն աւելի յաճախ՝ Վաս-պուրականի մէջ և անոր մօտակաները կը գտնուին. Ես բաւական հնութիւններ եղած եմ Մշոյ, Մանազկերտու, Բաղէշու և Կարնոյ կողմերը տեսնելու, գրեթէ երբեք չեմ գտած. այն ինչ Վանայ բերդին, Մհերի դրան, և այլ շատ մը այսպէս կոթողաձև լեռներու վրայ տա-շած ու դրածէն դատ, շատ մը գիւղերու և վանքերու մէջ կտոր կտոր քարեր կը գտնուին, որոց վրայ նոյնպէս բևեռագրեր կան: Վանայ քաղաքամիջի Սուրբ Առաք-եալք եկեղեցւոյ տաճարի ներքին պատին շարուած քա-րերու վրայ բոլորովին ամբողջ բևեռագրեր կան. Վարա-գայ տաճարի չէնքին մէջ գործածուած քարերուն վրայ Կարմրաւորեայ վանքը, և այլ տեղեր: Շատ տեղեր ալ հին գերեզմաններ փորելով կոր կամ քանդուածի երկար քա-րեր կ՛ելլեն բևեռագրերով: Այդ գիւղի եկեղեցւոյ Ս. Սեղանի վէմ քարը կլորաձև և մէջտեղը ծակ, ու չոր-ջանակը ամբողջ բևեռագրեր են: Ճիշդ ասոր նման քար մ՛ալ Վարագ կայ:

ՄՀԵՐԻ դրան վերէն սև ջուր մը կաթ կաթ կը ծորի: Եւ կ՛ըսեն. «Մհերին եւ իր ձին Աստուծոյ հրամանով փակուեր են այն տեղը: Այն սև ջուրը Մհերի ձիու չէշն է: Այդ դռնով ներսը Ճախրի Ֆալակ կը դառնայ, այսին-քըն աշխարհի մարդկանց կամ երկրագնդին ճախրը. ա-նիւը: Մհերը շարունակ անոր վրայ կը նայի. Երբ այդ ճախրը դադարի, այն օր Մհեր կ՛ազատի, դուրս կ՛ելլայ ու աշխարհը կ՛աւրէ»: Եւ թէ՝ «Ամէն տարի համբարձ-ման գիշերը երկինք գետնին իրար կը համբուրեն. և այդ րոպէին Մհերի դուռը կը բացուի. ով որ արթուն մնա-ցեր և այդ վայրկեանը տեսեր, ինչ որ սիրտն ուզեր, այնպէս եղեր է: Եւ օրհնեալ Մհերի դուռը բաց է այն րոպէին, ո՛վ որ ներս մտնէ, որքան ոսկի ուզէ

կ՚ատէն, դուրս կ՚ելլէ, վասնզի հոն աշխարհի ոսկին կուտ-ուած է ։ Թէ՝ քանի մը մարդիկ փորձեր են, և ագահ լինելով շատ վերցնելու համար յուշացեր, դուռը գոցուեր, ներսը մնացեր են» ։

Ուրեմն այս կերպով Մհեր կը լինի աշխարհի բաղդը դարձընող ու ոսկի բաշխող չաստուած մը, գուցէ Մհերն ինքն Միհր մեծն լինի, և իր դուռը ուղղակի հարաւ, հանդէպ կամ արևու լինելով՝ պաշտելու պատշաճ ։ Բայց ներկայ վէպը այսպէս կը պատմէ ։



